ՀԼԿԵՄ XXIX համագումարի պատգամավորը

# ՀԱՍՄԻԿ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ



Շատ երեխաների պես ես էլ ոչ մի կերպ չէի համաձայնում մանկապարտեզ գնալ: Քանի՜ անգամ է տատս ինձ խնդրելով, համոզելով, հասցրել մանկապարտեզի դուռը, և քանի՜ անգամ եմ ոտքերս գետնին խփել, գոռացել, ու փափկասիրտ տատս ստիպված ինձ տուն է վերադարձրել: Աստված գիտե, թե դեռ որքան կտանջեի տատիս, եթե նա ինձ գիշերօթիկ դպրոցով վախեցնելու միտքը չհղանար: Գիշերօթիկ դպրոցը մանկապարտեզի դիմացի շենքն էր: Մանկապարտեզի մուտքի մոտ տատս մատնացույց արավ այն և «սպառնաց», թե՝ մանկապարտեզ չըգնաս, կտանեմ գիշերօթիկ: «Մեշոկով պապի» պատկերը որևէ երեխայի վրա երևի այնպես չի ազդել, ինչպես ազդեց ինձ վրա գիշերօթիկը, ու ես հլու-հնազանդ ոտքս մանկապարտեզի շեմից ներս դրի:

Եվ հիմա, երբ գնում էի Երևանի № 22 գիշերօթիկ դպրոցը մաթեմատիկայի ուսուցչուհի Հասմիկ Արզումանյանի հետ հանդիպելու, գիշերօթիկի մասին մանկությունից եկած իմ պատկերացումը տանում էի հետս: Թվում էր պիտի մտնեմ մի մռայլ և անհրապույր հաստատություն, ուր բոլոր ուսուցիչները ինձ պատկերանում էին խոշոր ու խոժոռ տղամարդիկ:

Պարզվեց, որ այդպես չէր: Գիշերօթիկ դպրոցը, ննջարանային մասնաշենքը չհաշված, շատ սովորական մի շինություն էր, աշակերտները ոչնչով չէին տարբերվում մայրաքաղաքի մյուս դպրոցների աշակերտներից: Մաթեմատիկայի քսանվեցամյա ուսուցչուհի Հասմիկ Արզումանյանն էլ արտաքուստ շատ սովորական մի աղջիկ էր: Փոքրինչ անսովորը և տխուրը նրա կենսագրությունն էր: Ութ տարեկան հասակում կորցրել է մորը և հաճախել գիշերօթիկ դպրոց:

— Հետո հորս էլ կորցրի,— պատմում է նա:— Հորս հետ նույնպես շատ էի կապված: Նա էլ էր ուսուցիչ, միայն ոչ թե մաթեմատիկայի, այլ՝ հայոց լեզվի ու գրականության: Ասում են, որ ես իմ ավանդած առարկայի պես կոնկրետ ու որոշակի մարդ եմ: Չեմ առարկում: Եթե որևէ գործ հանձն առա, ապա անպատճառ կավարտեմ, կիսատ բաներ չեմ սիրում:

— Գիշերօթիկի պայմաններում երեխաների դաստիարակության ճիշտ դրվածքն ավելի է հնարավոր,— այնուհետև պատմում է ուսուցչուհին,— այստեղ փողոցը դեր չի խաղում, և շատ ամուր է կոլեկտիվի հասկացությունը, կոլեկտիվիզմը: Երեխաները այստեղ ուսուցիչների հետ ավելի են կապված, քան սովորական դպրոցներում: Մեկը մյուսի նկատմամբ ավելի հոգատար են: Ոչ մի աղջիկ երեխա անտարբեր չի մնում, երբ տեսնում է տղա ընկերոջ հագուստը պատռված է: Կարգապահությունը մեր դպրոցում բարձր հիմքերի վրա է դրված: Աշակերտների մեջ ուժեղ է պատասխանատվության զգացումը:

Հասմիկ Արզումանյանը № 22 գիշերօթիկ դպրոցում աշխատում է արդեն չորրորդ տարին, մանկավարժական ինստիտուտն ավարտելուց անմիջապես հետո: Առաջին տարվանից սկսած՝ դասավանդում է 10-րդ դասարանում: Այն ժամանակ նրա ու աշակերտների տարիքային տարբերությունը քիչ էր, ընդամենը չորս տարի: Այդպիսի դեպքում ուսուցչուհու ամենափոքր անտեղյակությունն ու վրիպումը կարող էր անախորժության տեղիք տալ: Բայց նա կարողացավ աշակերտների սերն ու հարգանքը նվաճել հենց առաջին օրվանից:

— Գուցե պատճառն այն է, որ ինքս էլ եմ գիշերօթիկ հաճախել, գիշերօթիկն ավարտել, նրանց հոգեբանությունն ու հոգեվիճակին լավ ծանոթ եմ:

Ուսուցչի աշխատանքը գիշերօթիկ դպրոցում շատ ավելի դժվար է: Հասկանալի պատճառներով երեխաներն այստեղ մի քիչ ընկճված են, և Հասմիկի կարծիքով շատ կարևոր է նրանց համոզել, որ իրենք ցերեկային դպրոցներում սովորողներից ոչնչով պակաս չեն և կարող են նրանցից շատ ավելի լավը լինել:

Դժվարություններ իհարկե շատ կան, բայց ամենադժվարը հիվանդ երեխաների հետ տարվող աշխատանքն է: Դպրոցը բուժման թեքում ունի, այնտեղ հիմնականում ողնաշարը հիվանդ երեխաների են ընդունում, ուր ուսուցման հետ հիվանդությունը բուժում են (ֆիզիոթերապևտիկ բուժում, բուժական ֆիզկուլտուրա, օրական չորս անգամ ուժեղ սնունդ): Դպրոցն ունի լողավազան, որտեղ առավոտյան ժամը իննից մինչև երեկոյան ժամը յոթը երեխաները պարապում են մարզիչների ղեկավարությամբ և լողալ գիտեն անխտիր բոլորը): Սովորաբար հիվանդ երեխաներն ավելի դժվար են սովորում, հուսահատ են, նրանց ոգևորելը հեշտ գործ չէ: Բայց ինչպես վկայում են դպրոցում, աշակերտ չկա, որին Հասմիկ Արզումանյանը մոտենա և չկարողանա տրամադրությունը բարձրացնել: Աշակերտների միջև երբեմն վեճեր են ծագում, թե ընկեր Արզումանյանը ո՞ւմ է ավելի մտերիմ, ո՞ւմ է ավելի սիրում:

Ուսուցչուհու կարծիքով, իրենց դըպրոցում անհամեմատ բարձր է բարոյական և աշխատանքային դաստիարակությունը, բայց թույլ է էսթետիկական դաստիարակության գործը: Դըպրոցը բազմիցս դիմել է կուլտուրայի ու լուսավորության մինիստրություններին, և հույս ունի, որ շուտով համապատասխան մասնագետներ կգան դպրոցում համապատասխան խմբակներ ղեկավարելու:

Հասմիկ Արզումանյանը նաև դպրոցի կոմերիտական կազմակերպության քարտուղարն է և այնքան լավ է դրսևորել իրեն այդ գործում, որ ընտրվել է ՀԼԿԵՄ 29-րդ համագումարի պատգամավոր:

*ՍՏԵՓԱՆ ՋԱՔԱՐՅԱՆ*









# ՄԱՅԻՍ

*ԻՍՐԱՅԵԼ ՋԱՆԴԼՅԱՆ*

Ալիքվում են հոծ փողոցներն այսօր,
Մարդկային երթն է հորդում գետի պես,
Ալ դրոշներից դարձել են բոսոր
Թե՛ տուն, թե՛ փողոց, այգի ու պարտեզ:

Արեգակն ինքն էլ զառ ու վառ հագել,
Մի նոր տեսքով է նայում բոլորիս:
Տո՛ն է խնդության, տո՛ն հաղթանակի,
Ողջու՜յն քեզ, արև, ողջու՜յն քեզ, մայիս:







# ԻՆՉՊԵՍ Է ԿԱՌՈՒՑՎԱԾ ՔՈ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

## ՕՂԱԿԸ

Ամենաառաջին պիոներական կոլեկտիվը քեզ համար ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՕՂԱԿՆ է հանդիսանում: Այն միավորում է հինգից-ութ պիոներ: Օղակները կամավոր կերպով ստեղծվում են այն ջոկատներում, որտեղ պիոներների քանակը տասից ավելին է: Օղակի մեջ մտնում են այն պատանիներն ու աղջիկները, որոնք հրապուրվում են միևնույն գործով, ընկերություն են անում միմյանց հետ, ապրում են նույն շենքում կամ միևնույն փողոցում: Օղակի ղեկավարը ՕՂԱԿԱՎԱՐՆ է, որն ընտրվում է տարին մեկ անգամ:

Օղակները սովորաբար միանում են մի շղթայի մեջ, որպեսզի բարի գործ կատարեն, օգտակար լինեն միմյանց, իրենց ընկերոջը, ավագներին: Որքան ավելի հետաքրքիր աշխատի օղակը, այնքան ավելի հետաքրքիր կլինի բոլոր տղաների ու աղջիկների կյանքը ջոկատում, նշանակում է, նաև դրուժինայում: Միշտ հիշի՛ր. ՕՂԱԿԻ ԳՈՐԾԵՐՈՎ Է ՈՒԺԵՂ ԴՐՈՒԺԻՆԱՆ: Օղակները միավորվում են պիոներական ջոկատներում:



Սերոբը դեռ փոքր էր, իսկ պապիկն արդեն մեծ, և երկուսն էլ տարիքի բերումով շքերթին չէին մասնակցում: Նրանք դուրս էին եկել մի քիչ ավելի ուշ և զբոսնում էին մարդաշատ փողոցներում՝ դրոշների ու խայտաբղետ տրանսպարանտների, աղմուկի և երաժշտության ելևէջների ներքո: Քաղցրավենիք ու պաղպաղակ արդեն ճաշակած Սերոբը, հսկայական փուչիկի թելը ձեռքում, հայացքով որոնում էր, թե է՞լ ինչպես կարելի է օգտվել տոնական օրերին չմերժվող հաճույքներից:

Նրանք կանգ առան մի խմբի մոտ, որը հավաքվել էր մետաղյա սարքի շուրջը: Սերոբն, արդեն գրաճանաչ էր, և ցուցանակի վրա կարդաց. «Բժշկական կշեռք. կշռման արժեքը 02 կոպեկ»: Կշեռքն անշուշտ բժշկական էր, բայց կշռող ծերունին աշխատակիցը հագին չուներ սպիտակ խալաթ: Ու թեև արևոտ էր օրը, երևի հաշվի առնելով եղանակների փոփոխամտությունը, ծերունին հագել էր անջրանցիկ թիկնոց: Խունացած թիկնոցի կապույտը սազում էր նույնպես խունացած կեպիին և արևներից, քամուց ու տարիներից կնճռոտ ու թուխ նրա դիմագծերին: Թե կյանքի ընթացքում ինչեր էր կշռել այդ ծերունին, Սերոբը չգիտեր, բայց հո գիտեր, որ իր պապիկը մինչև հիմա էլ կշռում է ուսանողների խելքը՝ նրանց գնահատելուց առաջ, և ինչպես ինքն էր սիրում ա-




ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

սել՝ կշռում է բառերը խոսելուց առաջ: Բայց հիմա պապիկն ընդամենը Սերոբին էր ուզում կշռել: Մյուս կշռվողները մեծ մասամբ Սերոբից մեծ, պապիկից փոքր տարիքի մարդիկ էին: Նրանք տրամադրված էին կատակելու, ծիծաղելու, զարմանալու, համեմատելու, հիշելու և ծրագրելու, թե այսուհետև նիհարե՞ն, թե՞ գիրանան:

— Վաթսունին կիլո... յոթանասուներկու... հիսունութ...

Հասավ Սերոբի հերթը, և նա փուչիկը ձեռքին, կանգնեց կշեռքին:

— Փուչիկն էլ հետը՝ քսանութ կիլո,— ժպտաց ծերունի աշխատակիցը:

Երիտասարդներից մի քանիսը կատակելու համար, Սերոբի պապի նիհարությունը ակնարկելով, մեկը մյուսի ետևից ասացին.




— Բա դու չե՞ս կշռվում, հայրի՛կ:

— Քո քաշը, տեսնես, ինչքա՞ն կլինի, քեռի՛:

— Վայ թե կշեռքը չդիմանա:

Պապը խեթ հայացք նետեց այդ երիտասարդների վրա, ապա վճռականությամբ գրկեց թոռանը և կանգնեց կշեռքին:

— Կշռի՛ր...

— Չեղավ,— առարկեց ծերունի աշխատակիցը:

—Կշռի՛ր, քո գործը չի,— կարգադրեց պապը:

— Ինչքան որ եղավ՝ միասին քսանութ,— ասաց հեգնող երիտասարդներից մեկը:

— Կշռի՛ր... — համառում էր շփոթված Սերոբի չշփոթվող պապը:

— Շատ է խնդրում, այդպե՛ս կշռիր,— վրա բերեց մի ուրիշ երիտասարդ:

— Ինչու՞ չպիտի կշռի, որ... բորբոքվեց Սերոբի պապը,— դեռ չորս տղա ունեմ, դրանց էլ պիտի կշռի, երեք աղջիկ էլ ունեմ, նրանց էլ, տասնվեց թոռ ունեմ, նրանց էլ: Եվ այդ բոլորի քաշը իմ քաշին պիտի ավելացնի, հասկացա՞ք, որպեսզի իմ քաշը որոշի:

— Կշեռքը չի դիմանա,— ուզում էր շարունակել երիտասարդներից մեկը, բայց մյուսը նրա գլխարկն իջեցրեց աչքերին և բացականչեց.

— Շնորհակալությո՛ւն, քեռի՛, ես իմ կյանքում այսպիսի հիանալի պատասխան չէի լսել:






# Ուկրաինական մանկական բանահյուսությունից

Ձյուն է շաղել անտառում,
Լռել են հավքն ու առուն,
Մարինան իր կողովով
Անցել է այդ կողմերով:
Ճերմակ ձյունն է նա կոխել,
Պստլիկ հետքեր է թողել:

Թռչում է ծառին
Սկյուռիկն անվերջ,
Կաղին է լցնում
Իր տոպրակի մեջ:
Լացկան չարերին
Կճեպն է տալիս,
Իսկ խելոքներին
Միջուկն է տալիս:

Գնա անտա՛ռ, կկո՛ւ ջան:
Բույնդ էնտեղ է սարքած,
Կանաչ խոտով է
ծածկած:
Էնտեղ կարմիր մորի կա,
Աղբյուրի պաղ ջրիկ կա:

— Բարո՜վ տեսանք, ա՜յ շլդո,
Էդ ու՞ր ես գնում:
Մենակ թե ճի՜շտն ասա դու,
Որտե՞ղ ես ապրում:
— Մոտերքում եմ ապրում ես,
Ափին լճակի:
Մենակ թե դու, ա՜յ աղվես,
Դուրս մի՛ թակի:

Ա՜յ դու փոքրիկ Մարուսինկա,
Ծաղի՜ր, շաղի՜ր ճամփիդ վրա,
Ճամփիդ վրա, ոտքերիդ տակ
Դաղձ ու ծաղիկ տեսակ-տեսակ,
Խաչածաղիկ չորսթևանի,
Տերեփուկ ու եղրևանի...
Կանցնի ճամփով մայրիկը քո,
Կհիանա զառ ծաղկունքով,
Քեզ կգովի, պաչիկ կտա:

Ման է գալիս հավիկը
Ցցի շուրջը, մարիկը
Ման է տալիս ճտերին
Ծաղկանց միջին, օ՜յ, միջին:

Սարի գլխին արտ է, արտ,
Ծլղոն նստել է անդարդ:
Խաղ է անում
Նստած տեղում,
Տոտիկներն է տանում-բերում.
Ի՞նչ կարող ես անել, որ
Ծլղոն էդպես է սովոր:

Իսկ աղվեսը անպիտան
Միտք է անում. «Թե ինձ տան
Էդպես փոքրիկ
Ոտիկ-մոտիկ,
Ինչպես սրա ոտքերն են ձիգ—
Ես էլ անդարդ խաղ կանեմ,
Այս խաղն ի՞նչ է խաղիս դեմ»:

Հե՜յ, դարբիննե՛ր, դարբիննե՛ր,
Ահել, ջահել դարբիննե՜ր:
Ահել դարբնին
Ձի նստեցրին,
Պառավ նանին
Հորթ նստեցրին,
Իսկ դարբնի թոռներին
Չալ կատուներ նստեցրին:
Գնացի՜նք:

*Թարգմ. ԴԱՎԻԹ ՀՈՎՀԱՆՆԻՍԻ*

Դա իմ մանկության փողոցն է, այստեղ եմ ես ապրել, սովորել դպրոցում: Եվ այս լորիները ու բարդիները, որ այժմ այդպես շնկշնկում են, մենք՝ դպրոցականներս ենք տնկել: Հիշում եմ, տնկիները ավելի շատ նման էին ճիպոտների. նույնիսկ դժվար էր հավատալ, որ կկպչեն ու կաճեն: Բայց համառորեն խնամում էինք: Մենք շատ էինք ուզում, որ Մոսկովյան շրջանի, նոր փողոցը, որը կոչվել էր Լենինգրադի պաշտպանության համար մարտնչող գեներալ Գալստյանի անունով, դառնար ամենականաչ և ամենագեղեցիկ փողոցը:

որը մեզ նվիրեցին սպայի տանը: Գեներալի համազգեստով մի մարդու լուսանկար էր: Մենք արդեն գիտեինք, որ դա Գալստյանն է: Մնացածը պետք է պարզեինք ինքներս:

Բենիամին Գալստյանը ծնվել է 1902 թ. մարտի 7-ին, հայկական գյուղում, աղքատ գյուղացու ընտանիքում: Երբ տղան 9 տարեկան էր, տեղի հարուստները սպանեցին նրա հորը: Մի տարուց հետո էլ նա զրկվեց մորից, հետո էլ՝ եղբորից: Տասնմեկ տարեկան Բենիամինը կուլակների մոտ բատրակություն անելով իրենն էր վաստակում իր մի կտոր հացը:

# ՏՈՆ՝ ՀԱՅ ՀԵՐՈՍԻ ԱՆՎԱՆ ՓՈՂՈՑՈՒՄ

Տ. ԿԱՄՉԱՏՈՎԱ

Եվ այն դարձավ այդպիսին: Վերջին ժամանակներս այստեղ վեր խոյացան բարձրահարկ շենքեր, ստեղծվեցին պուրակներ ու զբոսայգիներ: Այժմ ամեն գարուն և աշուն երեխաները ծառեր, թփեր և ծաղիկներ են տնկում: Եվ ոչ միայն նրա համար, որ 361-րդ դպրոցը գտնվում է այդ փողոցի վրա: Նրա պիոներական դրուժինան կոչվում է Գալստյանի անունով:

— Այդ պատվավոր անունը մեզ հեշտությամբ չշնորհեցին,— պատմում է կարմիր հետախույզների խմբի ղեկավար, պատմության ուսուցչուհի Լյուդմիլա Կոնստանտինովնա Լոպատինան:— Դրան նախորդել էին դժվարին աշխատանքի ու համառ որոնումների տարիներ: Եվ այս բոլորը սկսվեց մի սովորական լուսանկարից,

Մեծ հոկտեմբերից հետո նա ևս ուրիշների հետ սկսեց նոր կյանքի հիմքը դնել: Մասնակցեց Շիրակի ջրանցքի կառուցման աշխատանքներին: Հետո բանակ գնաց, մասնակցեց Բելոռուսիայի ազատագրմանը: Մարտական սխրանքների համար 1940 թվականին պարգևատրվեց Կարմիր Դրոշի շքանշանով:

Վրա հասավ 1941 թվականը: Ֆաշիստները պաշարեցին Լենինգրադը: Նևայի աջ ափին պաշտպանվում էին մեր զորամասերը, որ կրում էին Նևայի օպերատիվ խմբավորում անունը: Բենիամին Գալստյանը այդ խմբավորման ռազմական խորհրդի անդամ էր:

Նրան կարելի էր տեսնել թեժ մարտերի մեջ և ամենադժվար տեղերում: Քիչ առաջ կոմիսարին տեսել են գնդի

հրամանատարի դիտակետում, իսկ շատ չանցած նա արդեն գրոհի է առաջնորդում գումարտակներից մեկի մարտիկներին...

Շուտով կոմիսար Գալստյանը տեղափոխվեց 45-րդ գվարդիական դիվիզիան, որը պոլկովյան բարձունքն էր պաշտպանում: 1942 թվականի դեկտեմբերի 4-ին թշնամու արկը ճեղքեց բլինդաժի բարակ ծածկույթը, ուր գտնվում էր գեներալ-մայոր Բենիամին Գալստյանը: Նա մեռավ իր մարտական ընկերների ձեռքերի վրա:

Այդ օրերին բանաստեղծ Նիկոլայ Տիխոնովը գրել է. «...Գալստյանը այն մարդկանցից էր, որոնց կապվում են ամբողջ հոգով: Նա բարի, զգայուն, անվեհեր և վճռական մարդ էր... Գալստյանի անունը մենք կգրենք Լենինգրադի հերոս պաշտպանների անջնջելի ցուցակի մեջ և որպես մեր մեծ ժողովրդի պանծալի հայրենասեր, միշտ կհիշենք նրան...»

Շատ բան իմացան կարմիր հետախույզները նաև Գալստյանի կնոջից՝ Սուսաննա Իվանովնայից, որն ապրում է մեր քաղաքում: Երեխաները դարձան նրա հաճախակի հյուրը: Նրանք ծանոթացան նաև փառապանծ կոմիսարի զավակների՝ Էթերիի, Յուրայի և Օլեգի հետ: Հերոսի ընտանիքը դպրոցի դահլիճի համար երեխաներին տրամադրեց առաջին և ամենաթանկ հիշատակը:

Հետո սկսվեց նամակագրությունը: Խնդրում էին 45-րդ գվարդիական դիվիզիայի վետերաններին, կոմիսարին անձամբ ճանաչողներին՝ արձագանքել: Գրեցին նաև Հայաստան՝ Գալստյանի հայրենիքը:

Եվ մի օր «Պիոներսկայա պրավդա» թերթում կարդացին, որ Լենինական քաղաքում ապրում է բուդյոնովական, երեք պատերազմների մասնակից Սմբատ Գալստյանը: Դժվար է այժմ հիշել, թե առաջինն ու՞մ մտքով անցավ. «Իսկ եթե դա Բենիամին Գալստյանի եղբա՞յրն է»:

Երբ լենինականից ստացան շատ ցանկալի նամակը, հուզմունքից չէին համարձակվում ծրարը բացել: Վախենում էին հուսախաբությունից: Այնուհանդերձ երեխաները հուսախաբվեցին, բայց ոչ երկարատև: Թեև Սմբատ Գալստյանը հերոսի եղբայրը չէր, բայց նա տուրիստական «կայծ» ակումբին կից կարմիր հետախույզների շտաբի պետն էր: Եվ իր նամակում երեխաների անունից գրում էր.

«Սիրելի՛ լենինգրադցիներ, Գալըստյանի վերաբերյալ նյութեր հավաքելու գործում չէի՞ք օգնի մեզ: Խնդրում ենք հաղորդեք ձեր որոնման աշխատանքների փորձը. օգնության համար շատ շնորհակալ կլինենք...»

Սկսվեց նամակագրություն: Լենինգրադցիները ուղարկում էին եզակի լուսանկարների պատճենները, 45-րդ դիվիզիայի վետերանների հասցեները, իրենց քաղաքի մասին ալբոմներ և գրքեր: Փոխարենը ստանում էին Լենինականի տեսարանների նկարներ, որոնման աշխատանքների հաշվետվություն:

Տարեցտարի ավելանում էին Գալըստյանի զինակիցների, հայրենակիցների թիվը, որոնք դառնում էին № 361 դպրոցի բարեկամները: Մի անգամ, երեխաների մոտ եկավ Լենինգրադի համալսարանի ուսանող Ռուբեն Խաչատրյանը: Ծանոթացավ, տեսավ հուշադահլիճը: Իսկ հաջորդ օրը հետը բերեց Մուխինյան ուսումնարանի իր հայրենակիցներին: Նրանք առաջարկեցին հուշադահլիճի ձևավորման իրենց նախագիծը:

Ա. Ի. Գերցենի անվան մանկավարժական ինստիտուտին կից ակումբի վարիչ Անդրանիկ Ախայանը նույնպես հաճախ է այցելում դպրոց: Նա երեխաներին ծանոթացնում է հայ գրականության վերջին նորություններին, թարգմանում է հոդվածներ և հուշեր Գալստյանի մասին:

Հերոսի շատ ընկերներ և զինակիցներ ներգրավված են դպրոցի ակտիվի՝ յուրօրինակ «ընկերական խորհրդի» մեջ: Իսկ դա նշանակում է, որ նրանք ցանկացած պահին և՛ կօգնեն, և՛ խորհուրդ կտան:

Այսպես օրինակ, այդ խորհրդում որոշվեց Գալստյան փողոցի վրա գտնվող № 16 և № 27 բնակկառավարչությունների հետ կապ պահպանել: Որոշեցին փողոցի բնակիչներին պատմել այն մարդու մասին, որի անունը նա կրում է: Տասներորդ դասարանցիները ձևավորեցին ստենդները և ֆոտո-ցուցահանդեսները:

Չի կարելի չնշել նաև հուզիչ տոնակատարության մասին: Ամեն տարի աշնանը ամբողջ փողոցը, մեծ թե փոքր, դուրս են գալիս տոնահանդեսի: Թափորը գլխավորում են № 361 դպրոցի աշակերտները, որի դրուժինան կրում է հայ ժողովրդի փառապանծ զավակի անունը: Նրանց հետևում են զինվորները, որոնց ուսերին նստած են ծաղկեփնջեր բռնած, հուզված առաջին դասարանցիներ:

Ելույթ են ունենում կոմիսարի զինակիցները, կարմիր հետախույզները: Իսկ հետո ծաղկեփնջեր են դնում հերոսի պատվին փողոցի տներից մեկին փակցված մարմարյա հուշատախտակի մոտ: Որպես հիշատակ հրաշալի մարդու և Լենինի անունը կրող քաղաքը պաշտպանողների սխրագործության:

*Թարգմ. ՍՈՆԱ ԱՅՈՒՆՑԻ*

# ԻՆՉՊԵՍ Է ԿԱՌՈՒՑՎԱԾ ՔՈ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ




## ՋՈԿԱՏԸ

Ջոկատը պիոներական կազմակերպության ամենամարտունակ միավորն է, բայց դրա համար անհրաժեշտ է, որ այն լինի համերաշխ, համախմբված կոլեկտիվ: Ջոկատները ստեղծվում են դրուժինայում, որտեղ պիոներները քսան հոգուց ավելին են: Ջոկատի ծննդյան օրը պիոներներին հանդիսավոր կերպով հանձնվում է ՋՈԿԱՏԻ ԴՐՈՇԱԿԸ, շեփորը և թմբուկը: Ջոկատը գլխավորում են ՋՈԿԱՏԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ և ՋՈԿԱՏԻ ՋՈԿԱՏԱՎԱՐ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆԸ: Ջոկատը ընտրում է ՋՈԿԱՏԻ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԵՐԳԸ ԵՎ ՆՇԱՆԱԲԱՆԸ: Նա վարում է պիոներական տարեգրություն՝ պիոներական գործերի օրագիր: Ջոկատի պիոներները պայքարում են, որ իրավունք ունենան կրելու ՀԵՐՈՍԻ անունը, ում կյանքը և սխրագործությունը օրինակ են ծառայում պատանիների և աղջիկների համար:

Պիոներական ջոկատը գործում է մշտապես. աշխատանքային օրերին, տոներին, արձակուրդներին: Այն կապրի և կաշխատի հետաքրքիր, հընարագիտությամբ, եթե յուրաքանչյուր պիոներ ունի և կատարում է ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՌԱՋԱԴՐԱՆՔ՝ մշտական կամ ժամանակավոր: Ջոկատի կամ դրուժինայի խորհուրդը, ջոկատավարը պիոներներին հանձնարարություններ են տալիս՝ հաշվի առնելով նրանց հետաքրքրությունները, ցանկությունները, ունակությունները: Որպես ինչ էլ քեզ ընտրի ջոկատավարը՝ ջոկատի խորհրդի նախագահ, օղակավար, հոկտեմբերիկների ջոկատավար,

պատի թերթի խմբագիր, ինչ էլ քեզ նշանակեն՝ թիմուրական խմբի հրամանատար, ֆիզկազմակերպիչ, դպրոցական թանգարանի էքսկուրսավար, քո հանձնարարության կատարման համար դու հաշվետու ես ամբողջ ջոկատի առջև:

Լենինյան կոմերիտմիության կողմից պիոներական կազմակերպությանը տրվող կարևոր առաջադրանք է՝ աշխատել հոկտեմբերիկների հետ, արժանի փոխարինողներ պատրաստել, ծանոթացնել տղաներին և աղջիկներին պիոներների օրենքներին, ձգտել, որ յուրաքանչյուր հոկտեմբերիկ ընդունվի պիոներական կազմակերպության մեջ: Պիոներական ջոկատին կից ստեղծվում է ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻ ԽՈՒՄԲ: Ջոկատը ջոկատավարներ է առանձնացնում հոկտեմբերիկների համար, սակայն ջոկատի յուրաքանչյուր պիոներ մասնակցում է նրանց հետ տարվող աշխատանքին, աշխատում է, որ փոքրիկների համար հետաքրքիր լինի և ուրախ: Ընդգրկում է նրանց պիոներական գործերի մեջ, օգնում է կատարելու հոկտեմբերիկների կանոնները: Յուրաքանչյուր պատանի լենինյան, պիոներ, կազմակերպության անդամ լինելու ընթացքում աշխատում է հոկտեմբերիկների հետ:

Ջոկատի բարձրագույն օրգանը ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՀԱՎԱՔՆ Է: Այն կայանում է ոչ պակաս, քան ամիսը մեկ անգամ: Հավաքի ժամանակ ընդունելություն է կատարվում պիոներիայի շարքերը, պիոներական հանձնարարություններ են արվում, հաշվետվություն են պահանջում նրանց կատարման մասին, նոր պլաններ են նշվում: Պիոներական հավաքին կոլեկտիվ կերպով ընդունված որոշումը պարտադիր է բոլոր պիոներների համար: Տարին մեկ անգամ, որպես կանոն մայիսին, ջոկատը անց է կացնում հաշվետու-ընտրական հավաք: Լավագույն պիոներներից ընտրվում է ՋՈԿԱՏԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ, բաղկացած ոչ պակաս քան երեք հոգուց: Խորհուրդը կազմակերպում է ջոկատի ամենօրյա աշխատանքը:

Պիոներական ջոկատը ԻՐԱՎՈՒՆՔ ՈՒՆԻ. ինքնուրույն կերպով վճռել իր աշխատանքի բոլոր հարցերը, տղաներին և աղջիկներին ընդունել պիոներական կազմակերպություն, երաշխավորել դրուժինայի խորհրդին՝ լավագույն ընկերներին կոմերիտմիության մեջ ընդունելու, առաջադրել նրանց ջոկատի, դրուժինայի, պիոներական ինքնակառավարվող մարմինների մեջ և զրկել նրանց մշտական հանձնարարություններից, եթե չեն արդարացրել ընկերների վստահությունը, դրուժինայի խորհրդին դիմել հետաքրքիր առաջարկություններով, պիոներներին խրախուսանքի, պարսավանքի ներկայացնելու որոշում կայացնել:

Երբ դու և ջոկատի քո ընկերները դառնաք տասնչորս-տասնհինգ տարեկան և շատ պիոներներ դառնան կոմերիտականներ, ջոկատը անց կկացնի ՋՈԿԱՏԻՆ ՀՐԱԺԵՇՏ ՏԱԼՈՒ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՀԱՎԱՔ, որտեղ նոր ստեղծվող ջոկատին կամ դրուժինայի խորհրդին կհանձնի իր ջոկատի դրոշը, շեփորը, թմբուկը և տարեգրությունը:

## ԴՐՈՒԺԻՆԱՆ

Պիոներական ջոկատները միավորվում են դպրոցի պիոներական դրուժինայի մեջ: Արձակուրդի օրերին պիոներական ճամբարներում ստեղծվում են ժամանակավորապես գործող դրուժինաներ: Յուրաքանչյուր դրուժինա կոմերիտմիությունը ուղարկում է ԱՎԱԳ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՋՈԿԱՏԱՎԱՐ՝ պիոներական մարտական կոմիսար:

Դրուժինայի ներկայացուցիչները քաղաքներում և շրջաններում մտնում են պիոներական շտաբների կազմի մեջ, որոնք տղաներին և աղջիկներին օգնում են կազմակերպել աշխատանքը շրջանում և քաղաքում:

Պիոներական դրուժինաներից ըստեղծվում են շրջանային, քաղաքային և մարզային պիոներական կազմակերպություններ, որոնք մտնում են մարզային, երկրամասային, հանրապետական կազմակերպությունների կազմի մեջ:

# ԵՐԿՈՒ ԾԻՏԻԿ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Երկու ծիտիկ գիտեին,
Որ ինչպես էլ դիտեին
Բույնը բույն է.
Ծառը՝ ծառ,
Աշխարհը մեծ ու պայծառ.
Լիքը արև,
Լիքը լույս,
Լիքը երկինք,
Լիքը բույս...
Երգիր,
Ճնչիր,
Վայելիր...
Կյանքը հեքիաթ է ճախրի
Ու գեղեցիկ պահերի:



# ԱՄՊԻԿ

ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ

— Ամպի՛կ, ամպի՛կ,—
Հասկերն ասին,—
Չես մտածում
Դու մեր մասին:
Ու՞ր է տանում,
Քեզ խենթ քամին...
— Չենք իմանո՛ւմ,
Չենք իմանո՛ւմ,
Թե մեզ քամին
Ուր է տանում:
Թևեր չունենք,
Չունենք ոտքեր,
Որ գանք իջնենք
Բացատը ձեր:
Մենք հնազանդ,
Քամու գերի,
Կգանք ձեզ մոտ
Թե որ բերի...

Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ




Աշխարհի քարտեզի ամենաթեժ կետերից մեկըն է համարվում Մերձավոր Արևելքը, ուր Իսրայելը, Ամերիկայի Միացյալ Նահանգների եռանդուն օգնությամբ, չհայտարարված պատերազմ է մղում արաբական երկրների դեմ:

Լիբանանը Մերձավոր Արևելքի այդ երկրներից մեկն է: Նրա մայրաքաղաք Բեյրութում շուրջ մեկ միլիոն բնակչության գրեթե քառորդը կազմում են հայերը: Դրանք այն արևմտահայերից են, որոնք փրկվելով 1915 թվականի մեծ եղեռնից, ապաստան են գտել, իրենց գաղութները հիմնել բարյացակամ արաբական երկրներում: Բեյրութում գործում են բազմաթիվ հայկական դպրոցներ, մշակութային հաստատություններ, լույս են տեսնում թերթեր և հանդեսներ:

Անցյալ տարվա վերջին ամիսներին ես գտնըվում էի Բեյրութում, ուր հրավիրված էի դասախոսելու: Այդ ընթացքում ես ականատես եղա առօրյա կենցաղ դարձած գնդակոծությունների, պայթյունների, ռմբակոծությունների, տեսա, թե ինչ դժվարին պայմաններում են ապրում և սովորում բեյրութահայ պատանիները

*ԺԱՆԵԹ ՔԱՍՈՒՆԻ*

# ԴԱՍԵՐԸ ՎԵՐՍԿՍՎԵԼ ԷԻՆ...

Դասարանի գրատախտակի վրա գրված էր՝ «ապրիլի 2», և ամսից ավելի մնում էր ու հիմա օձի կատաղի նայվածքով դիտում ներս մտնող աշակերտներին: Նրանց դեմքերին երկար բացակայության կազդուրվածությունը չկար, այլ արհավիրք ապրածի սարսափը և ընկերներին տեսնելու դառն երջանկությունը:

— Կարոտել եմ մեր դասարանը:

—Ի՞նչ ուրախ եմ,— ասաց Սոնան դարակից գիրքը հանելով:

—Կարելի՞ է, որ ես Արայի տեղը նստեմ:

—Ես էլ՝ Վիգենի տեղը:

—Երևում է, շատ են բացակաները, ներկա-բացակայության թղթի վրա գրենք նրանց անունները:

Ցանկը երկար էր: Յուրաքանչյուր բացակայի հետ ուրախությունը տեղի էր տալիս և հուզումով լցնում մեր սրտերը:

—Ժակլինը գիտե՞ք թե ինչու չի եկել:

—Ծամփորդում է:

—Անին... Ֆրանսիայում պիտի մնա, մինչև որ խաղաղվի Լիբանանի դրությունը:

—Ալինենց տան վրա հրթիռ է ընկել և ընտանիքով գյուղում են հիմա:

— Նորան... պիտի գա, եթե ճամփաները բացվեն:

— Կասիա՞ն... Սեուտիտ է գնացել: Կգա, երբ օդանավակայանը գործի:

Դադարի պահ էր: Աշակերտները իջել էին ցած՝ գրքսանքի: Հանկարծ աղմուկ-աղաղակ բարձրացավ: Ի՞նչ կարող էր լինել: Սրտատրոփ՝ վազեցինք աղմուկի կողմը: Աստիճաններից վեր խուժող աշակերտները գոչում էին.

— Կասիա՜ն եկավ: Կասիա՜ն եկավ: Ահա՛...

ու աղջիկները։ Հանդիպումներ ունենալով հայկական դպրոցների ուսուցիչների ու աշակերտների հետ, զգացի, թե նրանք ինչ մեծ սեր են տածում Սովետական Հայաստանի նկատմամբ, ինչ զգացումով են արտասանում «մայրենի լեզու», «հայրենիք», «Հայաստան» բառերը։ Ես առիթ եմ ունեցել զրուցելու բեյրութահայ այն աշակերտների հետ, որոնք ամառային արձակուրդներն անց են կացրել մեր պիոներական ճամբարներում, Ծաղկաձորում և այլուր։ Պետք էր տեսնել, թե նրանք որպիսի՜ սիրով էին մտաբերում հայրենիքում անցկացրած այդ երջանիկ օրերը։

Բեյրութում տիրող դժվարին պայմաններում լույս է տեսնում նաև «Պատանեկան արձագանք» հանդեսը, որի խմբագիրներից մեկն է մայրենի լեզվի սիրված ուսուցչուհի Ժանեթ Քասունին։ Նա այդ հանդեսում հրապարակում է պատմվածքներ, որոնք պատկերացում են տալիս բեյրութահայ մանուկների այսօրվա կյանքի մասին։ Ամսագրի այս և հաջորդ համարներում ձեր ուշադրությանը կներկայացվեն Ժանեթ Քասունու պատմվածքներից մի քանիսը։

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*

**Կասիան գալիս էր, ետևից՝ մի խումբ աղջիկներ, որոնցից մեկը նրա պայուսակն էր շալակած բերում, մյուսը թևանցուկ էր արել նրան: Համբուրելով, հրելով, հրմշտելով, ուրախ բացականչություններով, Կասիային բերին ուսուցիչների մոտ:**

**— Կասիա՛, բարի՜ ես եկել,— ասացինք ու մենք էլ համբուրեցինք նրան: Դրանով մեր կարոտն էինք առնում դպրոց չվերադարձած աշակերտներից: Այդ տխուր օրերին մեզ կյանք ու հույս ներշնչող երևույթ էր Կասիայի վերադարձը:**

**Կասիան շփոթված էր ու հանկարծ սկսեց լաց լինել:**

**— Ինչու՞ ես լալիս, Կասիա՛, ուրախ չէի՞ր այնտեղ:**

**— Առաջին օրերը՝ այո՛, բայց հետո մտածում էի մեր տան, դպրոցիս ու ընկերներիս մասին:**

**— Դասերի մասին մի՛ մտահոգվիր: Շատ հեշտությամբ կհասնես ընկերներիդ: Մենք քեզ կօգնենք, ընկերներդ էլ, այնպես չէ՞:**

**— Անշուշտ, անշուշտ, ամեն բանում կօգնենք...— ուրախությունից արբած՝ ասացին ընկերները ամեն կողմից:**

**Կասիան շարունակում էր լալ: Նրա եղնիկի սիրուն աչքերից արցունքները հոսում էին: Սկսեց թաշկինակը փնտրել: Սոնան հասավ, սրբեց նրա արցունքները ու իբրև թե չէր հասկանում, հարցրեց.**

**— Կասիա՛, ինչու՞ ես լալիս:**

**— Լալիս եմ։ Բայց ուրախ եմ,— ասաց նա ժպտալով արցունքների միջից:— Ուրախ եմ, քանի որ դպրոցս բաց է ու դարձյալ տեսնում եմ ընկերներիս ու ուսուցիչներիս:**

**Հետո նա միացավ ընկերներին ու գնաց՝ նրանց ուրախ բացականչություններին խառնած իր ձայնը:**

**Ինչ լա՜վ կլիներ, եթե Արան, Վիգենը, Ժակլինը, Անին ու Ալինը, բոլոր, բոլո՛ր բացակաները, որոնք պատերազմի սարսափից հողմացրիվ էին եկել, վերադառնային ու մենք այսպես ուրախության ճիչերով դիմավորեինք նրանց, սրբեինք նրանց արցունքն էլ, և լսեինք նրանցից նույնպես.**

**— Ուրախ եմ, որ վերադարձա իմ տունը, դպրոցս ու միացա ընկերներիս...**

# ՔԵԶ ՀԱՎԱՏՈՒՄ ԵՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ, ԱՄԲՈՂՋ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

**Մեր հայրենիքի ապագան կդառնա այնպիսին, ինչպիսին այն դարձնեն այսօրվա հոկտեմբերիկները, պիոներները, կոմերիտականները: Եվ կուսակցությունը լիովին համոզված է, որ այդ ապագան կլինի գեղեցիկ, որ զավակներն ու թոռները պատվով կշարունակեն կրել Հոկտեմբերյան հեղափոխության դրոշը:**

**Քո ապրած յուրաքանչյուր օրով, հայրենիքի բարօրության համար կատարած քո գործերով արդարացրու կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի մեծ վստահությունը, քո ապրած յուրաքանչյուր օրով, հայրենիքի բարօրության համար կատարած քո գործերով պատրաստիր քեզ Համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության շարքերն ընդունվելու համար: ՀԱՎԱՍԱՐՎԻ՛Ր ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆՆԵՐԻՆ, ԲԱ՛ՐՁՐ ՊԱՀԻՐ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԴՐՈՇԸ:**



# ԻՆՉՈՒ ԵՄ ԱՅՍ

**1.**

Առարկայի նկատմամբ սերը սերմանում է ուսուցիչը: Սխալ չի լինի, եթե ասենք, որ մենք սիրում ենք առաջին հերթին ուսուցչին, հետո առարկան:

Կա ուսուցիչ, որի դասը, անկախ առարկայի դժվարությունից, անցնում է մեծ հետաքրքրությամբ: Այդ ուսուցչի դասը անցնում է շատ արագ: Կա ուսուցիչ, որի դասը այնքան դանդաղ է անցնում, որ հաշվում ենք վայրկյանները, մինչև գա բաղձալի դասամիջոցը: Բայց կան առարկաներ, որոնք պարտավոր ենք սովորել, օրինակ՝ մաթեմատիկան և լեզուները: Իզուր չեն ասում. «Որքան լեզու գիտես, այնքան մարդ ես»:

**2.**

Երբ մեր ուսուցչուհին առաջարկեց գրել շարադրություն այն մասին, թե ինչո՞ւ ենք սիրում այս առարկան, մյուսը՝ ոչ, ես փոքր-ինչ դժվարացա: Իսկապես, ինքս ինձ հարց եմ տալիս, ինչո՞ւ եմ սիրում, օրինակ, մաթեմատիկան, անգլերենը, հայ գրականությունը, ռուսերենը, իսկ մյուսները՝ ոչ: Այսինքն, մյուսները ոչ թե չեմ սիրում, այլ պակաս եմ սիրում: Ոմանք դա բացատրում են այսպես. «Առարկան կսիրես այն ժամանակ, երբ սիրես ու հարգես տվյալ առարկան դասավանդող ուսուցչին»: Բայց ես այդպես չեմ




# ՍԻՐՈՒՄ ԱՌԱՐԿԱՆ, ԻՍԿ ՄՅՈՒՍԸ՝ ՈՉ

մտածում: Օրինակ, սիրում ու հարգում եմ պատմություն կամ աշխարհագրություն դասավանդող ուսուցիչներին, բայց այդ առարկաները պակաս եմ սիրում: Առարկան սիրելը կամ չսիրելը կախված է նաև աշակերտի ընդունակություններից, բայց ես, դրա համար չէ, որ նախապատվություն եմ տալիս որոշ առարկաների: Օրինակ՝ մաթեմատիկային, որը շատ անհրաժեշտ է կյանքում: Յուրաքանչյուր մարդ, բացի իր մայրենի լեզվից, պետք է տիրապետի նաև ռուսերենին, գիտենա նաև օտար լեզուներ, որ Հայաստանից դուրս չխեղճանա:

**3.**

Սիրում եմ բոլոր առարկաները, բայց դժվար եմ սովորում: Որ օրը դասերս սովորած եմ դպրոց գնում, այդ օրն ուրախ է անցնում ինձ համար: Իսկ երբ դաս չսովորած եմ գնում, ամբողջ առաջին ժամին մտածում եմ, թե հետևյալ ժամին ի՞նչ է սպասվում ինձ: Սա իսկական դժբախտություն է: Դասերս սովորած ժամանակ կարողանում եմ ուսուցչի դեմքին նայել, իսկ երբ սովորած չեմ լինում, խուսափում եմ նրան բարև տալ:

**4.**

Ինձ դուր են գալիս մի շարք առարկաներ, ամենից շատ՝ մաթեմատիկան, հայոց լեզուն, ռուսաց լեզուն և ֆիզկուլտուրան:

Իսկ ի՞նչն է պատճառը, որ այս առարկաները ես ավելի շատ եմ սիրում, քան մյուսները:

Գնում եմ խանութ, ցանկանում եմ մթերքներ գնել: Դրա համար հարկավոր է մաթեմատիկա իմանալ, ճիշտ հաշվել, ճիշտ վճարել:

Յուրաքանչյուր մարդ պետք է լավ տիրապետի իր սեփական լեզվին, որ կարողանա գեղեցիկ խոսել, գեղեցիկ գրել:

Բացի սեփական լեզուն իմանալուց, հարկավոր է տիրապետել մեկ ուրիշ լեզվի, օրինակ՝ ռուսաց լեզվին: Ես այդ բանն ավելի լավ հասկացա, երբ գարնանային արձակուրդներին մեկնեցինք Ռիգա: Երբ Հայաստանի սահմանից դուրս եկանք, բոլորը, բացի մեզանից, խոսում էին ռուսերեն:

Յուրաքանչյուր մարդ պետք է զբաղվի ֆիզկուլտուրայով, որ լինի ուժեղ, կոփված, դիմացկուն: Ահա թե ինչու եմ սիրում այս առարկաները:





ՌՈՒԼԱՆԴ ՇԱՌՈՅԱՆ

# ԱՄՊԵՐԻՑ ՎԵՐ, ԱՍՏՂԵՐԻՑ ԷԼ ԱՅՆ ԿՈՂՄ

Անցյալ թե էն մյուս տարի Տիրան Շառոյանի մորաքրոջ տղան, որ յոթ տարով մեծ էր, նրան սովորեցրել էր պատերազմում կռվելու և մեռնելու կամ կռվելու և հաղթելու միակ ձևը: Մորաքրոջ տղան թոնրի շիշը տվել էր ձեռքն ու ասել. «Համարձա՛կ, համարձա՛կ խրիր, համարձա՛կ, համարձա՛կ խրիր», ու տղան հաղթել էր: Հիմա նոր պատերազմ էր լինելու: Գելաձորի ճանապարհին նոր խլուրդներ էին հայտնվել: Տղան տեսել էր, որ իր ռազմի դաշտը, որ մինչև պատերազմ հայտարարելը խլուրդների դաշտ էր կոչվում, նորից դարձել էր խլուրդների դաշտ, ու տղան շատ-շատ զարմացավ, որ երկու օր էլ չէր անցել իր հաղթական պատերազմից, նորից և դեռ ավելի շատ խլուրդներ հայտնվեցին: Սև, խոնավ ու փխրուն բլուրներով էր լցվել դաշտը: Տղան լռելյայն, ոտնաթաթերի վրա քայլելով շրջում էր ու մի պահ կանգնում թարմ, նոր փորած բլուրների կողքին...

«Համարձա՛կ, համարձա՛կ խրիր» ու միանգամից, կտրուկ, արագ, շիշը խրում էր փափուկ սևահողի մեջ: Տղան ուրախ չէր, որ իր մորաքրոջ տղան հնարել էր այս զզվելի պատերազմը:

Տղան սոված էր, բայց չէր ուզում թողնել կանաչ դաշտը, ուր մի քիչ առաջ ճակատամարտ էր մղում խլուրդների թագավորության դեմ: Սոված փորին սինձ ուտելը մի բան չէ՝ տղան էդ լավ գիտեր: Քանի անգամ էր կուշտ-կուշտ սինձ ուտելուց հետո փորցավից ամպի չափ լացել: Ուրեմն պիտի վերադառնար հոլիկ՝ դեպի հաց ու պանիրը, մածունը, կարագն ու կաթնապուրը, և էլի մայրը պիտի ասեր՝ քիթ ու մռութդ տես, վազի չռուկ աղբյուր ու մաքրի քեզ, քո տարիքին հայրդ պայտարի մոտ աշակերտ էր:

Մայր է, էլի, երկար է խոսում, որդու վրա է խոսում, ու ասածը որդու համար է, որդու լավ լինելու համար...

Տղան կուշտ սինձ կերավ ու ոնց որ փոշմանեց, որ չգնաց տուն, չնստեց մոր դիմաց ու մորական հազար ու մի ցավ և վիշտ, խելք ու խրատ պատմող, ասող, ցուցող բառերի մեջ չխճճվեց ու չկերավ իր բաժին հացը: Տղան հաստատ փոշմանեց, որովհետև ըզգաց, որ ինքն այլևս չի գալու Գելա-

ձոր: Այստեղ էլ խլուրդներ չեն լինելու, էլ շարժվող-բլուրվող հողից էս տարվա ծիլերը ու սարին անսովոր գառները չեն խրտնելու-փախչելու, ինքն էլ չի ծիծաղելու՝ բերանը բաց, նրանց անմեղության վրա, Գելաձորն էլ չի լցվի խրտնած գառների բարակ մայունով, գառներն էլ չեն լսի ձորի մայունը՝ երկար, երկար, երկար, գառ ու ձոր, ձոր ու գառ էլ չեն մայի հերթով, հերթով, հերթով:

Տղան զգաց, որ օդը պաղեց, ու կանաչ դաշտին ընկած լույսը մի քիչ խամրեց, հետո դաշտը սկսեց դանդաղ սևանալ: Սարում խփեց կայծակը, կարկուտ ու անձրև տեղաց, փչեց քամին՝ սարի սուր քամին: Տղան տեսավ երկնքում բռնկվող լույսերը:

Որոտը իջնում-լցվում էր տղայի ականջներն, ու նա վախից ավելի արագ էր վազում, թռչում էր: Տղան չզգաց, թե երբ որոշեց վազել, կայծակից փախչել, ու ինքն իրեն վազքի մեջ տեսավ:

Նա վազում էր ու մտածում, որ ուր որ է կայծակը կխփի: Հիշեց, որ թոնրի շիշը մոռացել է և ուրախացավ, որ մոռացել է, որովհետև գիտեր, թե կայծակը ինչ հեշտությամբ կշանթահարեր, եթե թոնրի երկաթե շիշը լիներ ձեռքին, և տղան շատ, շատ ուրախ էր իր իմացած-չիմացած ֆիզիկայի համար:

— Տիրա՛ն, տղաաաա Տիրաաա՛ն:

Որոտը, կարկտախառն անձրևն ու գլուխը կորցրած սարի քամին քշում-խլացնում, խեղդում էին մոր ձայնը:

— Տիրաաա՛ն, տղա Տիրաաա՛ն:

Տղան չէր լսում մորը, մոր կանչը չէր հասնում նրան, բայց առանց դրա էլ գիտեր, որ մայրը հիմա իրենից էլ արագ է վազում՝ գլուխը կորցրած, ու տղան հասկացավ, որ հիմա, հենց հիմա ինքն էլ կկանչի.

— Մաա՛աաա, մաաաա՛, մա՛:

Ջրից ելնող արձագանքն էլ լռեց: Տղային դուր եկավ, որ ձորն էլ է կանչում Մաաաա՛, մաաաա՛, մա՛: Նա հասկացավ, որ հիմա, այս պահին, երբ երկնքից կրակ է թափվում՝ կարկուտ, անձրև, որոտ ու կայծակ, ինքը մենակ չէ, Գելաձորն իր հետ է, ու որպեսզի միասին լինեին ինքն ու ձորը, տղան որոշեց կանչել, կանչել, կանչել.

— Մաաաաա՛, մաաաաաա՛, մաաաաա՛:

Մայրը գալիս էր որդու կողմը, որդուն ոտքերը տանում էին մոր կողմը: Ինչ երկա՛ր դուրս եկավ այս ճանապարհը: Տղան առաջին անգամ զգաց, որ այսպես շարունակ կարող է վազել, վազել, վազել ու չհասնել իր ուզած տեղերը: Այսպես լինում է երազներում: Նման երազներ նա հաճախ էր տեսնում: Երեկվա գիշերը մայրն արթնացել էր որդու լացի ձայնից (դուք երբևէ լացե՞լ եք երազում), որդին՝ տղան արթնացել էր իր լացի ձայնից. երազում Գելաձորի էգ գայլը մտել էր փարախ ու փախցրել տղայի ճերմակճակատ գառանը, նա հոլիկում լսել էր իր սիրելիի բարակ մայունը, դուրս էր թռել ու վազել անզեն, ոչ թե գայլի, այլ գառան ետևից, գայլն իրենը չէր, գայլի հետ գործ չուներ, գառն էր իրենը, իր ընկերը, իր հարազատը, ու նա վազում էր ճերմակճակատ գառան ետևից մի օր, մի ամիս, մի տարի, վաթսուն տարի, մի կյանք վազում էր,

վազում էր ու չէր հասնում իր գառանը, իր գառանը: Այդպիսի երազ չգիտեմ երբ, բայց մի օր հաստատ տեսել էր տղայի հայրը ու նա վազել էր ոչ թե գառան, այլ գայլի, գայլի, գայլի ետևից ու չէր հասել գառանը, գառանը, գառանը:

Մայրը վազում էր, ու ոտքերը նրան տանում էին որդու կողմը: Գլխաշորը պոկվել, փռվել էր ուսերին, ու մոր մազերը ծածանվում էին. նայողին կըթվար, թե այս պահին մայրը վազում էր գլուխը բարձր, գլխաշորն ուսերին, մազերն օդում ծածանելով, ու ո՛չ կայծակը, ո՛չ կարկուտը, անձրևն ու քամին չէին կտրում նրա վազքի ճանապարհը, որովհետև գտնվում էր նկարահանման հրապարակում և բեմադրիչին, մեծ չարչարանքներից հետո, վերջապես հաջողվել էր հասնել կադրի բնականությանը:

— Տիհրաաա՜ն:

Այս անգամ մայրը կանչեց, որովհետև տեսավ որդուն:

— Մաաաաա՜, մաաաաա՜:

Այս անգամ որդին կանչեց, որովհետև տեսավ մորը: Դուք տեսնեիք, թե ոնց կոտրվեց մոր վազքը, ու դանդա՜ղ, դանդա՜ղ, դանդա՜ղ մայրը սահում էր սարի վրայով: Իսկ տղան վազում էր ավելի արագ, ինչքան ուժ ուներ, ուներ-չուներ՝ մեկ է, մայրը նրան տեսել՝ կանչել էր, տղան ձայնի մեջ մոր արցունքն էր տեսել ու հիմա վազում էր իր ու մոր փոխարեն:

Տղայի համար այս ամենը խաղ էր, մի տեսակ հաճելի, դժվար, տխուր, թախծոտ խաղ, որ սեպտեմբերին դառնալու էր հիշողություն դպրոց գնալու ճանապարհին, պատմություն՝ հայրիկի համար, շարադրություն՝ «Ինչպես անցկացրի ամառային արձակուրդները» թեմայով, թեև հիմա տղայի մտքով չէր անցնում այդ: Բայց այդպես էր լինելու: Անցյալ տարվա ամռանը նույնը եղավ, ու տղան հասավ մորը, հասավ ու մեղավորի պես կանգնեց մոր դիմաց՝ գլուխը կախ: Տղան տեսավ, որ մոր շրջազգեստը թրջվել, կպել էր մարմնին, մայրը հազում էր: Բրդյա ջեմպրը արագ հանեց հագից, գցեց որդու ուսերին ու ձեռքը թողեց ուսին դրած:

Կարկուտը ծեծում էր, անձրևը թափվում էր, բայց մայր ու որդի նոր վազք սկսելու ուժ չունեին, իբրև թե վազում էին, ու էդ վազքը երազների միջի դաժան ու ճնշող վազքի էր նման:

Մայրը շան հաչոց լսեց՝ Մարտիկի շունն էր, բաց փարախի շուրջը պտտվում էր ու կաղկանձում: Փարախը մեծ էր: Մի կողմը նախիրն էր, մյուս կողմը՝ մայր ոչխարի հոտը, որ պատաշարով էր բաժանված: Թաց բրդի հոտ էր գալիս: Փարախը լցվել էր ոչխարների խուլ որոճով. մի քանի կով բառաչում էին ու գլուխները թոթվում: Մի քանի շուն գլուխ-գլխի տված վնգստում էին: Որ մտան հոլիկ, մայրը ջեմպրը վերցրեց որդու ուսից ու փռեց քուրսուն:

— Ծորերդ հանի ու պառկի,— ասաց:

Տղան լսեց մոր ատամների խրտոցը՝ դողում էր: Մայրը նավթոտ լամփի կոտրը գցեց վառարանը և աչքերով լուցկի փնտրեց՝ լուսամուտի գոգին էր: Մոր

ատամների խրտոցն ավելի էր ուժեղացել: Տղան լսեց, երբ շորերը հանել-փռել էր իշոտնուկի վրա և սև բլուզն էր հագել, որ քնելիս միշտ հագնում էր:

— Պառկի՛ր ու շրջվի՛ր պատի կողմը, շորերս փոխեմ,— ասաց մայրը:

Տղան իր համար խաղալիք էր ճարել: Ուշադիր զննում էր պատին փակցրված մոր ժպտացող լուսանկարը: Նա ամեն ինչ մոռացել էր՝ կայծակը, որոտը, անձրևն ու կարկուտը, փափուկ հողի մեջ խրվող թոնրի շիշը: Տղան նայում էր աչքերին անթարթ ու ասելն էն էր, թե ինչու՞ ես ժպտում, ի՞նչ եմ արել, որ ժպտում ես: Մայրը կպցրել էր նավթոտ լաթն ու լուսամուտի տակի խրձած արքատից հատ-հատ վերցնում-ջարդում էր ու լցնում վառարանը:

Տղայի աչքերը հոգնեցին լուսանկարին նայելուց, ու նա աչքերը փակեց, որ քնի: Դրսում անձրևը բարակել ու մաղում էր, և տղան լսում էր անձրևի ձայնը, Գելաձորի քամու գվվոցը, շան անհասցե հաչոցը, անհանգիստ կովերի բառաչը, թաց ոչխարների խեղդված մայունը, չոր արքատի ճթճթոցը:

Հերթով լսում էր բոլոր ձայները, լսում-վերջացնում էր ու նորից էր ըսկսում՝ առաջին՝ անձրևի ձայնը... Երկրորդ՝ Գելաձորի քամու գվվոցը, երրորդ...

Տղան երազում իրեն արծվի թևերով տեսավ և շատ ուրախացավ, որ կարող է ճախրել: Արծվի թևերը տըղային տանում էին դեպի վեր, ամպերից էլ վեր, աստղերից էլ այն կողմ...






Ութ հարյուր տարի առաջ Սենայի ձախ ափին խաղողի այգիներ էին տարածված. 1190 թվին Ֆիլիպ-Օգյուստ թագավորի հրամանով այնտեղ Փարիզի բոլոր շինություններից վեր խոյացող կլոր աշտարակով մի քառանկյունի ամրոց կառուցվեց: 150 տարուց ավելի Լուվրը ամրոց մնաց, հետո Ֆրանսիայի թագավորների աթոռանիստը դարձավ: Ֆրանսուա Առաջինը իր ժամանակի ամենատաղանդավոր ճարտարապետ Պիեռ Լեսկոյին ու քանդակագործ Ժան Գաժոնին հանձնարարեց Վերածննդի ոճով վերակառուցել Լուվրը:

Երբ գահ բարձրացավ Լյուդովիկոս 14-րդը, Լուվրն արդեն նկարների հավաքածու ուներ, որոնց թիվը 200-ի էր հասնում: Կամենալով բարձրացնել իր հեղինակությունը հպատակների աչքում, թագավորը վճռեց մեծացնել հավաքածուն, հասկացնելով իր մերձավորներին, որ իրեն նվիրաբերած արվեստի ստեղծագործությունը կօգնի յուրաքանչյուրին թագավորական բարեհաճ վերաբերմունքին արժանանալու: Եվ, բնականաբար, ամեն կողմից արվեստի գործեր եկան Լուվր: Լյուդովիկոս 14-րդի կյանքի վերջում դրանց թիվը 2376-ի էր հասել:

1789 թվի ֆրանսիական Մեծ հեղափոխության ժամանակ ապստամբները վճիռ ընդունեցին Լուվրը դարձնել արիստոկրատներից բռնագրավված գեղարվեստական ստեղծագործությունների պահեստ ու գանձարան: 1793 թվին նրա դահլիճներում ցուցադրված էին ամրոցներից ու մենաստաններից հավաքած և համաժողովրդական սեփականություն հայտարարված արվեստի գործեր: Այդ գործողությունը մի նոր էջ էր գեղարվեստի թանգարանների պատմության մեջ: Նախկինում ընտրյալների մի խմբին տրամադրված գլուխգործոցներով այժմ կարող էին հիանալ բոլորը:

Այժմ Լուվրը, Էրմիտաժի ու Բրիտանական թանգարանի պես, աշխարհի ամենահարուստ թանգարաններից մեկն է հանդիսանում: Միայն Հին Հունաստանի ու Հռոմի արվեստի գործերից 20 հազար ցուցանմուշ կա այնտեղ, որոնք 37 դահլիճ են զբաղեցնում: Եգիպտական արվեստի բաժին ընկնելու համար մի մռայլ թունելով են անցնում: Առեղծվածային ժպիտով է դիմավորում այցելուին կարմիր քարե սֆինքսը, խորհրդավոր փայլփլում են մի քանի հազար տարի առաջ վախճանված փարավոնի քանդակի աչքերը: Այս բաժինն էլ է շատ հարուստ: Եգիպտոսը նվաճելիս Նապոլեոնն իր բանակում հատուկ մարդիկ ուներ, որոնք փնտրում, գտնում էին էկզոտիկ քանդակներ, մումիաներ, արվեստի ամեն

տեսակ ստեղծագործություններ և Փարիզ էին ուղարկում:

Լուվրի 24 դահլիճներում հազարների են հասնում Տիգրիսի ու Եփրատի ափերին գտնվող հնագույն պետություններում բնակվող ժողովուրդների կյանքին ու կենցաղին վերաբերվող ցուցանմուշները: Հեքիաթային պատկեր են ներկայացնում ոսկեզօծ, բարձրաքանդակներով ու հարուստ պաստառներով զարդարված մյուս 43 դահլիճները, որտեղ հավաքված են անհայտ վարպետների ստեղծած արվեստի գործերը:



ՎԵԼԱՍԿԵՍ—«Ինֆանտուհին», Լուվր

Գեղանկարչության բաժիններում պահվում են ավելի քան 92 հազար յուղանկարներ ու մատիտանկարներ, այդ թվում նաև պաստել, ջրաներկ, մանրանկարչություն: Քանդակագործության բաժնում կարելի է տեսնել միջնադարի ու Վերածննդի ժամանակաշրջանների քանդակներ (Բենվենուտո Չելլինիի ու Միքելանջելոյի գլուխգործոցները):

Բայց հատկապես հարուստ է մշտական ցուցադրանքը: 50 դահլիճներում (որոնցից 15-ը նվիրված են ֆրանսիական արվեստին) 3000-ից ավելի նկարներ են ցուցադրված: Այստեղ կարելի է տեսնել Ռաֆայելի, Տիցիանի, Ռուբենսի, Պուսենի, Ռեմբրանդտի կտավները: Այցելուները երկար կանգնում են Լեոնարդո դա Վինչիի նշանավոր «Ջոկոնդա» դիմանկարի առջև:

Լուվրի տնօրինությունը քիչ ջանք չի թափում, որպեսզի անգին գլուխգործոցները պահպանի, թանգարանի հավաքածուները գերազանցապես լրացվում են արդեն վախճանված վարպետների ստեղծագործություններով: Սակայն տնօրինությունը սևեռուն կերպով հետևում է ժամանակակից արվեստի զարգացմանը և աշխատում է բաց չթողնել ոչինչ, որ բանիմաց մասնագետների կարծիքով արժանի է Լուվրի գանձարանում տեղ գրավել:

*Թարգմ.՝ Լ. ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

*ԷԴՈՒԱՐԴ ՄԱՆԵ—«Պատշգամբում», Լուվր, իմպրեսիոնիզմի թանգարան*



# ՆԱԽԱՆՁ...

Սիրելի խմբագրություն.

Ամեն քառորդի վերջում մեր դասարանի երեխաները կռվում են իրար հետ: Կռվի պատճառը նախանձն է: Տղաները նախանձում են լավ սովորողներին:

Ուզում ենք օգնել, որ լավ սովորեն, բացատրում ենք տնայինն աշխատանքը, բայց նրանք ասում են. «Քո բացատրելը մեզ պետք չէ, տո՛ւր արտագրենք»: Բայց չէ՞ որ երբ հուշում ենք նրանց, կամ մեր տնայինները ենք տալիս արտագրելու, նրանք ոչինչ չեն սովորում: Երբեմն էլ լավ դաս պատասխանողին ծաղրում են: Դասարանում տղաները աղջիկների հետ խոսելուց խուսափում են, որովհետև հենց խոսում են, սկսվում է բամբասանքը, այնքան, մինչև իրարից խռովում են: Հաճախ դասը վատ պատասխանելով, ուսուցիչներից բարձր գնահատական են պահանջում: Չգիտես ինչու, աշխատում են մեկը մյուսին վատություն անել: Ընկերոջ վատ արարքների վրա ծիծաղում են, փոխանակ կարգի հրավիրելու: Ասացե՛ք, խորհո՛ւրդ տվեք, ինչպե՞ս վերացնենք դասարանից նախանձն ու բամբասանքը: Ինչպե՞ս կվարվեին այս դեպքում ուրիշները:

*ԳԱՅԱՆԵ ՊՈՂՈՍՅԱՆ*
*Էջմիածնի շրջ., գ. Ամբերդ*

«Пионер»-ից

# «ԱՍԱ՛ ԻՆՁ, ԻՄ ՀԱՅԵԼԻ...»

Ես կորցրեցի ընկերուհուս: Մտքովս այդպիսի բան չէր անցնում: Մի ժամանակ մենք մտերմություն էինք անում չորս հոգով: Հետո մեզանից մեկը՝ Մարինան, մեկնեց: Շատ մեծ ցավ էր մեզ համար նրանից բաժանվելը: Մենք մնացինք երեքով՝ Անյան, Վալյան և ես: Առաջվա պես մտերմություն էինք անում: Եվ հանկարծ խռովություն ընկավ մեջներս: Մի ուրբաթ օր Վալյան եկավ մեր տուն, որպեսզի միասին գնանք դպրոցական երեկույթի: Ես զարմացա, որ Անյան նրա հետ չէր: Վալյան ասաց, թե՝ Անյան չի ուզում ինձ հետ լինել, ամաչում է, որ ես գեղեցիկ չեմ: Հենց տեղ հասանք, ես նայեցի ինձ հայելում: Բայց չէ՞ որ ես այլանդակ չեմ, շատերը ինձ դուրեկան

են համարում: Ես ինձ անասելի վատ զգացի: Ուզեցի գոռալ, բայց զսպեցի ինձ, երեկույթից չփախա, նույնիսկ ստիպում էի ինձ ժպտալ, որպեսզի Վալյայի տրամադրությունը չփչացնեմ: Անյան երբ հայտնվեց, ինձ ու Վալյային չնկատելու տվեց: Վալյան շատ բարկացավ Անյայի դեմ, ասաց, որ Անյայի հետ այլևս ընկերություն չի անի: Իսկ ես մտածեցի, թե՝ գուցե Անյան ճի՞շտ է ասում, ճիշտ ասել՝ չի նշանակում դավաճանել: Բայց Անյան ինչու՞ էր Վալյային ասել, ոչ թե ինձ: Դաժան բան էր նրա արածը: Ես ոչ ոքի հետ այդպես վարվել չէի կարող: Մի՞թե սիրում և ընկերություն ես անում միայն լավերի, գեղեցիկների հետ:

Ես լաց եղա երեկույթից հետո, տանը: Մայրս երբ ինձ կանչեց հաց ուտելու, ես մտածեցի՝ թե ինչ լավ է, որ ես այսպիսի մայրիկ ունեմ և որ ես մեկին պետք եմ: Բայց, այնուամենայնիվ, մեծ ցավ է ինձ համար, որ կորցրեցի ընկերուհուս:

*Կ. Ս.*
*Կրասնոյարսկի մարզ*

# ՈՒ՞Մ ԱՐԱՐՔՆ ԷՐ ԱՎԵԼԻ ՎԱՏ

Մի անգամ որոշեցինք պատմության դասից փախչել: Ինչ փչեց խելքներիս, չգիտեմ: Բայց որոշեցինք... Բոլորը համաձայնեցին, նրանցից բացի, ովքեր ուղղել էին ուզում իրենց «երեքը»: Նույնիսկ գերազանցիկները տատանվելուց հետո հետևեցին մեզ: Հատկապես մի աղջիկ էր դրդում մեզ փախչել դասից, ասում էր, որ պատմության դասին անելիք չունենք և շտապեցնում էր բոլորիս: Մենք գնացինք: Իսկ հետո պարզվեց, նույն այդ Լենան, բոլորիս այդպես խելքից հանելով, ընդհանուր իրարանցման ժամանակ աննկատելի մնացել է դասարանում:

Դասղեկը, իհարկե, հետևյալ օրը, ինչպես որ պետք էր, նախատեց մեզ: Իրոք վատ էինք արել: Հիմա այդ հասկանում ենք: Բայց Լենայի արարքն ինչքա՜ն զզվելի է մեր աչքում:

*Օլյա Կ.*
*ք. Կրասնոյարսկ*

# «ԸՆԿԵՐՈՋ ՀԵՏ ՔԱՅԼԵԼՆ ՈՒՐԱԽ Է...»

Ես սովորում եմ գիշերօթիկում: Վերջերս հիվանդացա: Մտածում էի, թե ոչ ոք ինձ տեսության չի գա: Մեկ էլ դուռը ծեծեցին: Սկսեցի արագ խաղալիքներս հավաքել, բժիշկը կգար ու կտեսներ, որ ինձ մոտ ամեն բան ցաքուցրիվ է: Բայց եկողը բժիշկը չէր, այլ մեր չորրորդ դասարանցի Սվետան ու Լուսյան: Բացում են դուռն ու ժըպտում. «Դիմավորի՛ր հյուրերիդ, հիմա էլի աղջիկներ կգան»:

Ինչքա՜ն հաճելի է ինձ համար, ի՜նչ լավ է ունենալ ընկերուհիներ, որոնք հիշում են քեզ:

*ԼԵՆԱ ԿԻՋԵՎԱ*
*ք. Յարոսլավլ*

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

# ՊԱՏԳԱՄ

**Ամեն մեկին բարի խորհուրդ
Պապն է տալիս,
Տատն է տալիս,
Եվ տալիս են այն մեծերը,
Որ լավ գիտեն
Կյանքի բոլոր բարդ հարցերը:
Ինձ էլ նրանք ասին այսպես.
— Թե ունենաս
Բարու ճամփով քայլելու սեր,
Կյանքը պետք է չթվա քեզ
Գլխապտույտ մի կարուսել:
Մեկ քայլ առաջ թե գնացիր,
Մի՛ կարծիր թե՝ այս է որ կա,
Հասար արդեն վերջնագծին...
Եվ ում համար ինչ էլ անես,
Մի՛ սպասիր, որ հատուցեն.
Մայրդ վարձո՞վ է սիրում քեզ,
Կամ արևը
Մի՞թե վարձ է ակնկալում,
Երբ ամեն օր խնդմնդալով
Քո աչքերից լցվում է ներս...
Ամեն մեկին բարի խորհուրդ
Պապն է տալիս,
Տատն է տալիս,
Ինձ էլ նրանք ասին այսպե՛ս:
Ու երբ նրանց խոսքն եմ հիշում,
Ստուգում եմ քայլերս ես,
Եվ որ նրանց
Խոսքը կրկին շարունակվի՝
Ինչ լսեցի՝ ասում եմ քեզ:**

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 49. ԵԿԵՔ ՆԱՄԱԿ ԵՎ ԴԻՄՈՒՄ ԳՐԵՆՔ

Կարո՞ղ եք պատկերացնել, որ մարդ այսպիսի նամակ գրի մտերիմ ընկերոջը. «Հարգելի Սուրիկ, շուրջ մեկ ամիս է, ինչ Դուք մեկնել եք և սույնով հարկ եմ համարում Ձեզ տեղյակ պահել հետևյալի մասին՝ ես լի եմ կարոտի զգացմունքներով դեպի Ձեզ, ուստի և խնդրում եմ ինձ դասեք Ձեզ սաստիկ կարոտող ընկերների շարքը...»

Այսպիսի նամակ ստացողը կարող է մտածել, որ նամակագրի խելքը տեղը չէ կամ էլ՝ նա ձեռ է առնում իրեն:

Նույն այդ ոճը, որ այնքան խորթ էր մտերմական նամակին, շատ բնական կլինի պաշտոնական դիմումի մեջ. «Հարգելի ընկեր այսինչյան, սույնով տեղյակ եմ պահում Ձեզ, որ իմ տունը գտնվում է վթարային վիճակում, ուստի և խնդրում եմ Ձեզ, որ ինձ դասեք առաջին հերթին բնակարան ստացողների շարքը...»:

Դիմումը պաշտոնական փաստա-

թուղթ է և պահանջում է նույնպի-
սի ոճ՝ հակիրճ, խստորոշ, առանց
Կարգին դիմում գրելու համար նս
հարկավոր է լեզվական մի որոշ
ավելորդ «նաղլերի»:
կուլտուրա:

Իսկ կարգին նամակ, անկեղծ, սրտալի նամակ գրելն արդեն շնորհքի գործ է: Չի՞ պատահում՝ մարդ կա, որի գրած նամակը ստանում եք անտարբերությամբ, չեք էլ շտապում ծրարը բաց անել, գիտեք մոտավորապես ինչ պիտի գրած լինի՝ ինչ-ինչ տեղեկություններ և տափակ խոսքեր՝ «Եթե կուզես իմանալ, մենք շատ լավ ենք, նույնն էլ ցանկանում ենք ձեզ...»:

Բայց լինում է և այնպես, որ ծրարը բաց եք անում սրտի թրթիռով, վստահ, որ այդ քառածալ թղթի մեջ և՛ անկեղծ զգացմունքներ կլինեն, և՛ հումոր, սովորականից դուրս մի թանկագին միտք: Այդպիսի նամակը կարդալուց հետո չեք ուզենա ճմրթել ու դեն գցել, այլ կպահեք իբրև հուշ և հուշանվեր, որ տարիներ անց կարդաք ավելի մեծ բավականությամբ՝ անցած օրերը մըտաբերելով:

Պատահական չէ, որ մեծ հետաքրքրություն է ներկայացնում նըշանավոր մարդկանց նամականին, գրողների նամակագրական ժառանգությունը: Կարդացեք Հովհաննես Թումանյանի նամականին՝ մըտքերի, զգացմունքների ծո՛վ: Ինչքա՜ն գրական երկեր են ստեղծվել նամականու ձևով՝ Ֆ. Դոստոևսկու «Խեղճ մարդիկ» վիպակը (որ լույս է տեսել հայերեն հիանալի թարգմանությամբ), Նար-Դոսի «Աննա Սարոյան» վիպակ-նամականին՝ լեցուն տրտմալի և սրտալի, հոգի ազնվացնող զգացմունքներով:

Գրավոր խոսքի գուցե և ոչ մի ձև այնպես չի բացում մարդու հոգին ու բնավորությունը, որքան ամենամտերմականը՝ նամակը, որ, կարծես, անկեղծ զրույցի համարժեքն է գրավորում: Կարդացեք Ստեփան Զորյանի «Հոգաբարձուն» պատմվածքը և տեսեք, թե մի քանի նամակի միջոցով գրողն ինչպես է բնավորություն ստեղծում: Մտաբերեցեք գյուղացի Համբոյի նամակը Գիքորին և տեսեք, թե դա հուզական որքա՜ն մեծ բեռ է կրում պատմվածքում՝ մինչև խորքը բացելով չարքաշ գյուղացու վիճակն ու հոգեբանությունը:

Դիմում գրելիս պարտադիր չէ, որ մարդ բաց անի հոգին, օտար մարդուն ի ցույց դնի իրեն պաշարած հուզմունքները, դա վատ դաստիարակության նշան է: Մինչդեռ նամակը, երբ գրվում է մտերիմ մարդու, մարդկային անկեղծության վկայագիր է՝ նման երկու մարդու զրույցին: Չէ՞ որ նամակագրությունը նույն զրույցն է, միայն թե՝ գրավոր: Երկու դեպքում էլ մենք ուզում ենք մեր մտքերով, զգացմունքներով, մեզ համակած հուզմունքներով համակել դիմացինին, նրան ինչ-ինչ տեղեկություններ ենք հաղորդում, կամենալով, որ նա մտածի և վարվի մեր ուզածի պես:

Նպատակը նույնն է, միջոցները, ձևերը, ոճերն են տարբեր:

Բանավոր խոսքն էլ իր գեղեցկությունն ունի, որ նույնպես ստանդարտ չէ. ամբիոնից հնչող խոսքի գեղեցկությունն ուրիշ է, մտերմական զրույցինը՝ ուրիշ, դաս պատասխանողի խոսքի ոճը տարբեր է խնջույքի սեղանի շուրջը հնչող խոսքի ոճից:

Բանավոր խոսքն էլ իր օրենքներն ու օրինաչափություններն ունի, և դրանք միշտ չէ, որ համընկնում են գրավորի օրենքներին ու օրինաչափություններին: Ուրեմն՝ արժե, որ մեր վերջին զրույցներից մի քանիսը նվիրենք բանավոր խոսքին:

# ՎԼԱԴԻՄԻՐ ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Այսօր անհնար է համաշխարհային բռնցքամարտը պատկերացնել առանց Վլադիմիր Ենգիբարյանի, մի մարդու, որը ոսկե տառերով փառաբանեց հայկական բռնցքամարտը, այն բարձրացրեց միջազգային մակարդակի:

ՍՍՀՄ սպորտի վաստակավոր վարպետ, օլիմպիական խաղերի հաղթող, Եվրոպայի և ՍՍՀՄ եռակի չեմպիոն, համաշխարհային սիրողական բռնցքամարտի մրցավարական կոլեգիայի անդամ Վլադիմիր Ենգիբարյանի մասին դեռևս 1955 թվականին անգլիական «Բոքսինգ նյուս» ամսագիրը գրել է. «Ենգիբարյանը սիրողական բռնցքամարտի հպարտությունն է: Նա համեստ է, ֆիզիկապես լավ պատրաստված, ոտքերի հոյակապ աշխատանքը հիշեցնում է Ջոն Լուիսին: Բացարձակ ռեակցիա և հարվածների հարուստ բազմազանություն՝ահա նրա բնորոշ գծերը»:

Մելբուռնի օլիմպիական խաղերից և 1957 թվականի Եվրոպայի առաջնությունից հետո, համաշխարհային մամուլը միաձայն հայտարարեց, որ Ենգիբարյանը իր սերնդի բռնցքամարտիկներից ամենամեծն է՝ չեմպիոնների չեմպիոնը:

«Ես գիտեմ սովետական շատ տաղանդավոր բռնցքամարտիկների, սակայն նրանց մեջ լավագույնը Վլադիմիր Ենգիբարյանն է»,— այդպես է մտածում օլիմպիական խաղերի եռակի չեմպիոն, հունգարացի Լասլո Պապը:

«Ռինգի կախարդ». այսպիսի վերնագիր ուներ «Սպորտ ռևյու» (ԳԴՀ) ամսագրի՝ Ենգիբարյանին նվիրված հոդվածը: Եվ նրանց համար, ովքեր դիտել են նրա ելույթները, նա մնաց հենց այդպիսին՝ ռինգի կախարդ...

1959 թվականից առ այսօր Վլադիմիր Ենգիբարյանի ղեկավարությամբ է գործում Երևանի պատանի բռնցքամարտիկների դպրոցը, ուր ներկայումս մարզվում է 52 խումբ, 820 սաներով: 40 խմբեր, որպես դպրոցի մասնաճյուղեր, գործում են հանրապետության տարբեր շրջաններում: Նպատակը մեկն է՝ պատրաստել բռնցքամարտիկներ, որ կարողանան բարձր պահել հայկական բռնցքամարտի բարի անունն ու պատիվը:

Այս տարի լրանում է փառաբանված մարզիկի ու մանկավարժի ծննդյան 50-ամյակը: «Պիոներ» ամսագրի բազմահազար ընթերցողների անունից ջերմորեն շնորհավորում ենք Վլադիմիր Ենգիբարյանին, ցանկանալով նրան իր սաներով հանդերձ, երջանկություն և նորանոր հաղթանակներ:

*ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ*

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ



ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ




## 8. Թաշկինակները

Սահակը մտածում էր որևէ ձևով իր փնտրտուքների և փորձերի արդյունքները մնայուն դարձնել: Նա շատ անգամ էր կարդացել Խորենացի պատմահոր աշխարհացույցը և միտք էր հղացել սիզաբեր հողերի և որդի տարածման վայրերը նկարել հայկական կարմրով: Սահակի աչքերի առաջ վաղուց կար այդ պատկերը, բայց իղձը ի կատար ածելու առիթը ներկայացավ միայն 1836 թվին, երբ Հովհաննես կաթողիկոսը գնաց Թիֆլիս, որտեղ նստում էր փոխարքան: Սահակը մի տեսակ անգործ էր մնացել և որոշեց օգտագործել ժամանակը:

Մեծ պասի օրերին նա սկսեց ծաղկազարդել մի մետաքսյա թաշկինակ: Թաշկինակի եզրերը զարդարեց ժանյակներով ու ծաղիկներով, իսկ մեջը նկարեց Մասիս լեռը իր լանջերով: Լեռան գագաթը, ինչպես ինքն էր տեսել այն անմոռանալի վաղորեին, ճերմակ էր, աղեղնավոր ծիածանով: Ծիածանի գոտու տակ զետեղեց Նոյան տապանը: Լեռան լանջից փրկարար աղբյուրն էր բխում, իսկ ստորոտում Արաքսի ալիքներն էին հետապնդում իրար: Ափին նկարեց Խոր-Վիրապի բլուրը և վանքը, ապա մոտակա գյուղերը և դաշտերը: Եվ ահա նրա առջև, սեղանին փռված էր հայկական նարմրի տարբեր երանգներով և գույներով զարդարած թաշկինակը: Հետևյալ օրերին նա ընդօրինակում և բազմացնում էր այդ պատկերը: Հաջողված նկարը նրան հանգստություն չէր տալիս, և մարտի 16-ին նա թաշկինակներից մեկը ուղարկեց Թիֆլիս՝ Հովհաննես կաթողիկոսին: Սահակը անհամբեր սպասում էր պատասխանի. ով գիտե, սուրբ սարի իր պատկերացումը հանկարծ սրբապղծություն չհամարե՞ն: Շուտով պարզվեց, որ վեհափառը գոհունակությամբ է ընդունել անզուգական նվերը և օրհնության հետ միասին Սահակին է ուղարկել մի չուխա, որի նմանը ուներ միայն վեհափառի հոգեորդի Գևորգ եպիսկոպոսը:

Թաշկինակներից մեկն էլ նա նվի-

րեց տեր-Ներսեսին, որը շատ բարյացակամ էր և մեծապես նպաստել էր Սահակին, ի կատար ածել աշխատանքը: Տեր-Ներսեսի խորհրդով ծաղկազարդ թաշկինակներից մեկն էլ նա նվիրեց գեներալ-մայոր Հովսեփ Բեհբութովին: Իշխանն ընդունելով նվերը, ասաց.

— Այնպես համարիր, որ Երևանն ու սուրբ Աթոռն ինձ նվիրեցիր:

Թաշկինակներից մեկն էլ տվեց Հնդկաստանի նվիրակ Պողոս արքեպիսկոպոսին, որպես սիրո և հարգանքի նշան: Այդ նվերը այնքան էլ անշահախնդիր չէր, քանի որ Սահակը սրբազանից խնդրեց, որ սուրբ Աթոռ վերադառնալիս նա իր հետ բերի կտավի վրա նկարելու և ներկեր պատրաստելու հնդկական հնարների նկարագրությունը: Նա տվեց նաև չորացած որդեր և խնդրեց ցույց տալ հնդկական վարպետներին և նրանցից իմանալ միջատները յուղազրկելու հնդկական միջոցը: Արքեպիսկոպոսը 1843 թվին Կալկաթայում այդ թաշկինակը ցույց տվեց պարոն Հովհաննես Մելքում Մանուկին, որը մեծ թախանձանքով այն վերցրել էր, դրել ապակյա շրջանակի մեջ և ասել.

— Հայրենիքս և սուրբ Աթոռը ինձ նվիրեցիք:

Այդ օրերից անցել է համարյա դարուկես, դա մի ակնթարթ է մեր պատմության համար, բայց այսօր այդ անզուգական թաշկինակներից չկան և ոչ մեկը, նրանք չեն զարդարում մեր թանգարանները:

## 9. Ինքնակալի այցը

Լրանում էր տասնամյակը, ինչ Արևելյան Հայաստանը գտնվում էր Ռուսաստանի հովանու ներքո: 1837 թ. աշնանը Ռուսաստանի 41-ամյա միապետը այցելեց Հայաստան, ուր և ցանկություն հայտնեց գնալ Էջմիածին: Նրան շատ էին պատմել Արշակունի թագավորների մայրաքաղաքի հազարամյա տաճարի մասին:

Էջմիածնի հոգևորականությունը և ժողովուրդը ցարական աստիճանավորների ծրագրով և ղեկավարությամբ դիմավորեցին թագավորին: Նախքան տաճար մտնելը, արքան այցելեց տըպարանը և ճեմարանը:

Համաձայն վաղօրոք մշակված ծրագրի, ընտրյալները մոտենում էին արքային ողջունելու և նվերներ մատուցելու համար: Սահակ ծաղկարարն էլ կաթողիկոսից նախօրոք ստացած թույլտվությամբ, մի գեղեցիկ սկուտեղի վրա զետեղել էր ապակյա եռաբաժին տուփը, որի բաժիններից մեկում գտնըվում էր մաղած մաքուր որդան կարմիրը, մյուսում՝ սիզախառն, իսկ երրորդում՝ որդի ձվերը՝ կարմիր խաչխաչի հատիկների մեծության: Նա մոտեցավ թագավորին և ցույց տվեց տուփը, բայց արքան չհասկացավ, թե դա ի՞նչ է: Սահակը արագ ձեռքը տարավ ծոցը, խոշորացույցը հանելու համար: Նիկոլայը, որ շատ էր լսել կովկասցիների դաշույնների մասին, մի պահ սոսկաց, մտածելով, որ աստծո դատաստանը կկատարվի վանականի ձեռքով, բայց սև սքեմավորը խոնարհաբար նրան տվեց խոշորացնող ապակին և ցույց տվեց որդերը: Նա ակամա վերցրեց ապակին և հիշեց, որ այդ միջատների մասին լսել է կուսակալ Ռոզենից դեռևս 30 թվին: Նա թիկնապահին նշան արեց վերցնել սկուտեղը, ապա դառնալով Սահակին, ասաց.

— Хорошо! Хорошо!

Թագավորը գնաց: Տոներին հաջորդեցին սովորական օրերը: Սահակը շարունակում էր իր փորձերը և օրվա մեծ մասը անց էր կացնում ջերմատանը: Սիզերը անում էին աղուտից բերած հողի վրա, իսկ բազմաթիվ որդեր ջերմոցում գտնվում էին համարյա բնական պայմաններում: Սահակը այլևս չէր գնում աղուտները, նա իր ուսումնասիրությունները շարունակում էր ջերմոցում, որոնք համարյա ամեն օր բերում էին Սահակին որևէ նորություն:

Նա երազում էր Արարատյան դաշտի բնակիչներին սովորեցնել կարմիր որդեր բուծելը և առանց ծախսի ստանալ թանկագին ներկը:

1839 թ. ամառն էր, ծերունի Սահակը ջերմոցում կռացած ստուգում էր սեզերի արմատները, երբ ջերմոցի դը-

ռան առջև հայտնվեց բանբեր Մարտիրոսը:

— Աչքդ լո՛ւյս, սրբազա՛ն Սահակ, նորին վեհափառ սուրբ օծությունը ուղարկել է հայտնելու ձեզ, որ նորին կայսերական բարձրությունը հրամայել է իր գանձարանից քեզ վճարել յուրաքանչյուր տարի 200 արծաթ ռուբլի մինչև կյանքիդ վերջը:

Մի քանի օր հետո յասաուլ Գևորգը որոշումը Սահակին հանձնեց:

Տարեվերջին, դեկտեմբերի 8-ին նա կաթողիկոսի հրամանի համաձայն գնաց Երևան և ստացավ այդ տարվա հասանելիք 142 ռուբլի 77 կոպեկը:

## 10. Որոնումները

«Վերջին տարիներին Հայաստանում բացի հայկական կարմիր որդից, հայտնաբերվել են ևս 2 տեսակ որդեր, որոնք հավանաբար ինչպես հայկական որդերը, կարող են օգտագործվել կարմիր ստանալու համար»:

Ն. Ս. Բորխսենիուս, 1949 թ.
«Հայաստանի կոկցիդների որոշիչ»

Գիտական խորհրդի նիստը շարունակվում էր: Այդ օրը քննարկվում էր գիտնականների տարեկան հաշվետվությունը: Փոքրիկ բեմահարթակի վրա զետեղված մահուդածածկ սեղանի հետևը նստած էին գիտական խորհրդի նախագահը և քարտուղարը: Սեղանից աջ գտնվում էր ամբիոնը, իսկ ձախ՝ ցուցատախտակը:

Զեկուցողը, մի երիտասարդ քիմիկոս, հաճախ էր նայում առաջը դրված թերթիկներին, որոնց վրա շարադրված էր իր հաշվետվությունը: Նա մի կում ջրով թրջեց հուզմունքից չորացած կոկորդը և սկսեց կարդալ: Հաշվետվությունը կազմած էր սովորականի նըման: Նախ ասաց, որ նպատակ է դըրված որդից ստանալ կարմիր ներկը մաքուր վիճակով, առանց մոմի և ճարպի, հետո հայտնաբերել ներկի քիմիական կառուցվածքն ու բաղադրությունը, ապա մշակել ներկի օգտագործման եղանակները: Լսարանում նստած էին հյուրերը և գիտական խորհրդի անդամները: Ելույթը լսում էին առանց լարվածության: Զեկուցողը ասաց, որ միջատները ճարպից ազատվում են, բայց ոչ լրիվ, ներկն անջատվում է, բայց ջրում անլուծելի է, ապա ցուցադրեց ներկված բրդյա թելեր, որոնք թեկուզ ունեին տարբեր երանգներ, բայց շատ հեռու էին հնում օգտագործված պայծառագույն հայկական գույնզգույն թելերից: Ունկնդիրների համար առանց հարցերի էլ պարզ էր, որ տակավին չէր լուծվել հայկական կարմրի առեղծվածը: Չնայած դրան, զեկուցումը առաջացրեց մի փոքրիկ բանավեճ:

— Մեր ինչի՞ն է պետք այդ ներկը, չէ՞ որ այժմ քիմիան տալիս է էժան և անսահման քանակով բարձրորակ ներկեր:

— Որ էժան ու անսահման է՝ դա ճիշտ է, բայց ինչ մնում է որակին, կարմիրը տասնապատիկ լավ է նրանցից:

— Այո՛, բայց բնական ներկի ինքնարժեքը հարյուր անգամ ավելի է արհեստականից:

— Կարմիրն անփոխարինելի է գեղանկարչության և անվտանգ սննդամթերքներ ներկելու համար: Հիշենք, թե ինչքան գունավոր հրուշակեղեն ենք օգտագործում:

— Չէ՞ որ գների պատճառով անելինյան ներկերը դուրս մղեցին հրաշալի բուսական, երկնագույն ինդիգոյին, որի գինը անհամեմատ թանկ էր:

— Այդ ճիշտ է, բայց համաշխարհային շուկայում միշտ անհագ է կարմիրի ծարավը, մենք իրավունք չունենք այդ անտեսելու:

Երկու կողմերն էլ ճիշտ էին, հայտնի էր, որ ծովային խեցգետիններից ստացվող անզուգական պուրպուրի մի գրամը արժենում էր համարյա 30000 ոսկե մարկ: Թանկ էր նաև մեքսիկական և եվրոպական կարմիրը, որոնք ստացվում են կաշինիլից: Համեմատաբար էժան է բուսական ծագումով ինդիգոն, որը հնուց համարվում է ներկերի արքա: Ինդիգոյի ներկակիր բույսի դաշտերը զբաղեցնում էին Հնդկաստանի 600000 հեկտար տարածությունները և ապահովում էին հազարավոր տոննա ներկի ելքը: Միջին դարերում հընդ-

կական ինդիգոյի մրցակիցն էր եվրոպականը, որը ստացվում էր վայդա բույսից, բայց այս բույսի դաշտերը չքացան, երբ հոլանդական նավերը Եվրոպա հասցրին ավելի էժան, գաղութային ներկը: Հետագայում բնական ինդիգոյի և կարմինի արտադրության համար մահացու եղան քիմիկոսների հայտնագործությունները:

Նրանք նախ պարզեցին մարենա բույսից ստացվող ներկի բաղադրությունը, ապա նաև արհեստական ճանապարհով ստացան այդ նյութը՝ ալիզարինը:

Գերմանացի գիտնական Ռանգեն էլ քարածուխի ձյութի օգտագործման հիմքը դրեց և շուտով այդ «կեղտից» ստացվեցին ծիածանի բոլոր գույները: Այդպիսով գիտնականները արմատապես հեղաշրջեցին ներկերի արտադրությունը, ահա թե ինչու ձեռնտու չեն բնական ներկերը:

Հետո ելույթ ունեցան որդան կարմիրով զբաղվող մյուս գիտնականները: Հսկայական աշխատանք էր կատարվել միջատի կենսաբանական հարցերի ուսումնասիրման ուղղությամբ: Պարզվել էր միջատի և սիզախոտի քրոմոսոմային առանձնահատկությունները, ուսումնասիրվել էին որդի բազմացման փուլերը: Աշխատանքները կատարել էին մոլեկուլյար մակարդակի վրա: Սկսվել էին հետազոտությունները գենետիկական որոշ հարցերի շուրջը: Առաջադրվում էին մի շարք հիպոթեզներ՝ նախ, որ այդ որդի օրգանիզմում հավանաբար գտնըվում է որևէ համակեց մանրէ, որն էլ հավանաբար նպաստում է ներկի սինթեզմանը և երկրորդը, որ հնարավոր է արհեստական պայմաններում աճեցնել որդի ներկակիր բջիջները, որոնք անկախ բազմանալով, կդառնան ներկ ստանալու անսպառ աղբյուր: Այս բոլորը հետաքրքիր և խորհրդավոր էր և մինչև անհասկանալիության աստիճան գիտական:

Բայց ներկը, հայկական կարմիրը, չկար ու չկար:

Գիտական խորհրդի նիստը շարունակվում էր...

# ԺՊԻՏՆԵՐ



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Ամերիկացի հայտնի գիտնական Բենիամին Ֆրանկլինը (1706—1790), որն զբաղվում էր ոչ միայն գիտությամբ, այլև հասարակական ու քաղաքական գործունեությամբ, մի ժամանակ եղել է անգամ դեսպան Ֆրանսիայում: Այդ պաշտոնում նա դրսևորում էր դիվանագետի ձիրք, հմայում էր մարդկանց: Զարմանալին այն է, որ երիտասարդ ժամանակ այդ նշանավոր մարդը աչքի է ընկնում անտանելի վատ բնավորությամբ: Վարվեցողությամբ վայրիվերո էր ու դատողություններ անելիս՝ անվերապահ:

Ինչպե՞ս պատահեց, որ նրա մեջ այդպիսի կտրուկ շրջադարձ կատարվեց:

Ահա թե ինչպես.

Մի անգամ փողոցում Ֆրանկլինին հանդիպում է իր մի ծանոթը և սրտի ցավով ասում.

— Լսի՛ր, Բե՛ն, դու պարզապես անտանելի ես դարձել: Դու այնքան շատ բան գիտես, որ ոչ ոք քեզ նոր բան չի կարող հաղորդել: Բայց և ոչ ոք չի էլ մտածում այդպիսի բան անել, որովհետև դու կոպտորեն վիրավորում ես ամեն մեկին, ով քո կարծիքին չի լինում: Իզուր չէ, որ քո ընկերները հաջող են համարում այն երեկոն, երբ դու իրենց հետ չես լինում:

Այն միտքը, որ ընկերները ուրախանում են, երբ ինքը նրանց հետ չէ, այնպես է ցնցում Ֆրանկլինին, որ նա սկսում է հետևել ինքն իր վարքագծին և ժամանակ անց ձեռք է բերում «հոգի մարդու» համբավ:




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 5 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԽԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 15.3.1982 թ., Ստորագրված է տպագրության 29.4.1982 թ.: ՎՖ 06135: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16, Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65062: Պատ. 506: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.



ՊԻՈՆԵՐԻԱ-60



Այս գծագրի 16 փոքրիկ շրջանակներում 473-ից մինչև 488-ը ներառյալ թվանշանները պետք է տեղադրել այնպես, որ ուղղահայաց, հորիզոնական, անկյունագծերով, ինչպես նաև մեծ շրջագծերի վրայի չորս թվերի գումարը (19 անգամ) հավասար լինի Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության ստեղծման տարեթվին (1922 թ.): Նույն գծագրի նույն փոքրիկ շրջանակներում 488-ից մինչև 503-ը ներառյալ թվանշանները դասավորել այնպես, որ ուղղահայաց, հորիզոնական, անկյունագծերով, ինչպես նաև մեծ շրջագծերի վրայի չորս թվերի գումարը հավասար լինի հոբելյանական տարեթվին (1982 թ.):

Դարձյալ նույն գծագրում՝ 8-ից մինչև 22 թվերը և 15 թվանշանը կրկնելով դասավորել այնպես, որ թվերի գումարը ստացվի 60, պիոներական կազմակերպության տարիների թիվը:

Առաջարկ՝ ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ

## № 4 ՊԱՏԱՍԽԱՆ № 4

ԴԵՊԻ ԱՋ (սև նիշերով)
1. Շուն: 2. Նավ: 3. Վրան: 4. Նոտա: 5. Արա: 6. Արամ: 7. «Մարդ»: 8. Դոն: 9. Նամակ: 10. «Կարո»:

ԴԵՊԻ ՁԱԽ (սպիտակ նիշերով)
1. Որակ: 2. Կամա: 3. Անող: 4. Դրամա: 5. Արարատ: 6. Տոն: 7. Նարվա: 8. «Անուշ»:




# ՊԻՈՆԵՐԻ ԿԱՆՈՆ-ՆԵՐԸ

ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՊԻՈՆԵՐ ԻՐԱՎՈՒՆՔ ՈՒՆԻ.

Ընտրել պիոներական ակտիվ՝ օղակավար, ջոկատի և դրուժինայի խորհուրդ, դրոշակակիր, ջոկատի պատի թերթի խմբագիր, ինչպես և ընտրվելու պիոներական ակտիվի մեջ:

Քննարկել պիոներական հավաքույթներին, հավաքներին, ջոկատի և դրուժինայի խորհուրդների նիստերին, պիոներական մամուլում, ջոկատի և դրուժինայի պատի թերթում պիոներական աշխատանքի բոլոր խնդիրները: Ներդնել գործնական և հետաքրքիր առաջարկություններ այն մասին, ինչպես ավելի լավ կազմակերպել ջոկատի կյանքը, խոսել ամեն ինչի մասին բացահայտ, պաշտպանել սեփական կարծիքը: Սակայն եթե հավաքը արդեն վճիռ ընդունեց, այն պիոների համար օրենք է:

Պիոներական հավաքներին, հավաքույթներին համարձակ կերպով քննադատել յուրաքանչյուր պիոների, յուրաքանչյուր ակտիվիստի, ինչպես նաև ջոկատի կամ դրուժինայի խորհուրդը, քաղաքային և շրջանային պիոներական շտաբները: Սակայն ՄԻՇՏ ՀԻՇԻՐ ԿԱՆՈՆԸ, ՊԻՈՆԵՐ. քննադատելիս խորհի՛ր՝ ինչպես շտկել սխալները, առաջարկություններ մտցնել, քանի որ գործի ընդհանուր հաջողությունը կախված է և քեզնից, յուրաքանչյուր պիոներից:

Անձամբ մասնակցել պիոներական հավաքին, ինչպես նաև ջոկատի կամ դրուժինայի խորհրդի նիստին, եթե քննարկվում է նրա աշխատանքը կամ վարքը:

Դիմել հարցերով ու առաջարկություններով պիոներական կազմակերպության ամեն մի խորհրդի՝ ջոկատի, դրուժինայի, քաղաքային, շրջանային, մարզային և հանրապետական, իսկ եթե անհրաժեշտ է, Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության կենտրոնական խորհուրդ՝ ներկայացնելու պիոներական պարգևի, խնդրել երաշխավորություն դրուժինայի խորհրդից՝ Լենինյան կոմերիտմիության շարքերը ընդունվելու համար: